

# ԵՐԿՆԱԳՈՒՅՆ ԱՂՋԻԿՆԵՐԻ ՊԱՐԸ

ՀԱՅԿ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Նկ. ԷԴՎԱՐԴ ԶԱՔԱՐՅԱՆԻ

Ձորակի կանաչապատ թեքության վրա, խոտերի մեջ, պառկել է Աշոտը և կիսախուփ աչքերով նայում է կապույտ ու խոր երկնքում թավալվող ամպերի ծվեններին: Ցածից լսվում է գետակում լողացող երեխաների աղմուկը, վերը՝ ճամբարում՝ լռություն է:

Նրա գլխավերևում հայտնվեց Նորիկը. Աշոտը հարցական շուռ եկավ դեպի նա:

— Հը՞...

Բայց Նորիկը առանց ուշադրություն դարձնելու ընկերոջ վրա, անխոս, իր համար հարմար տեղ ընտրեց և պառկեց:

— Հը՞,— նորից հարցրեց Աշոտը:

— Դե որ բան չեմ ասում, ուրեմն չկա է՛լի,— սրտնեղած փնթփնթաց Նորիկը:

— Լավ նայեցի՞ր:

—Է՜,—նորից սրտնեղեց Նորիկը:—Լավը ո՞րն է. բոլորը իջան ավտոյից, նա չիջավ, ուրեմն չի եկել: Նստարանների տակը հո չպիտի նայեի: Ես հենց սկզբից էլ զգում էի, որ նա այս տարի չի գա:

— Որտեղի՞ց էիր զգում: Վեցերորդ զգայարա՞ն ունե՞ս, ի՞նչ է:

— Ի՞նչ գիտես, մեկ էլ տեսար, որ ունեմ: Դեռ անցյալ տարի Վաչիկն ասում էր, որ կարող է ծովափ գնա:

Հետո երկու ընկերները երկար ժամանակ լուռ նայում էին երկնքին և մտածում Վաչիկի մասին:

Նրանք Ծաղկաձոր էին գալիս տարբեր շրջաններից. Աշոտը՝ Աշտարակից, Նորիկը՝ Եղեգնաձորից, իսկ Վաչիկը գալիս էր Իջևանից:

Նախորդ տարիների ճամբարային ընկերությունից հետո, մի տեսակ անհետաքրքիր ու անիմաստ էր դարձել երկուսի ընկերությունը: Երկուսով ոնց որ մենակ... Երկուսով նրանք երբեմն ավելի թըշնամիների էին նման, քան ընկերների:

Երբ նրանց հետ էր Վաչիկը, երբ նրանք երեքով էին, նույն այդ ժամերին, ճաշից հետո, նույն այդ թեքության վրա պառկած, նայում էին երկնքին: Վաչիկը մեղմ կիթառ էր նվագում, իսկ ամպերի ծվենները՝ երաժշտության հնչյուններին համարվելով, լողում էին երկնքում:

— Եկող տարի ես էլ կգնամ ծովափ,— վիրավորված փնթփնթաց Նորիկը:

— Եկող տարի Վաչիկը կգա,—բողոքեց Աշոտը:

ՀՈՒԼԻՍ
№ 7 1964 Թ.



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
42-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

— Գալիս է, թող գա։

— Քո ուզելով հո չի, ծնողներդ քեզ պիտի տանեն ծովափ, որ դու էլ գնաս,— հեգնեց Աշոտը։

— Հա՛...— Նորիկը հանկարծ նստեց։— Ընկեր Սահակյանն ասաց, որ մի նորեկ է գալու մեր ճամբար, ասաց, որ մեր ջոկատն են բերելու։

— Արտեկացի՞ է,— ուրախ հարցրեց Աշոտը.— արդեն եկե՞լ է, թե՞ նոր պիտի գա։

— Կարծեմ եկել է։

— Ի՞նչ անենք։

— Ի՞նչ պիտի անենք։

— Ո՞նց թե,— զարմացավ Աշոտը.— նոր մարդ է, հայրենադարձ... Պիտի հենց այնպես գա ու վե՞րջ։ Մի բան պիտի անենք, որ հետաքրքիր լինի։ Միայն հերթապահներ հո չե՞նք ցույց տալու։ Ով գիտե, որտեղից է եկել, մեկ էլ տեսար՝ Աֆրիկայից է։ Իսկ Աֆրիկայում, գիտե՞ս, նա ինչեր կարող է տեսած լինել... Անտառներ, վայրի գազաններ։

— Հետո՞ ինչ,— ասաց Նորիկը.— մեր անտառներում էլ արջեր կան։

— Լավ ասացիր...— ուրախացավ Աշոտը.— եկ մենք էլ պատմենք՝ ինչպես անցյալ տարի Վաչիկը, դու ու ես արջի ենք հանդիպել։

— Ե՞րբ,— զարմացավ Նորիկը։

— «Ե՞րբ», «Ե՞րբ»...— դժգոհեց Աշոտը.— Համարենք թող մի քիչ զարմանա, որ իր համար էլ հետաքրքիր լինի։

— Դե լա՛վ, ասա տեսնենք։

Աշոտը մի քիչ մտածեց ու ասաց.

— Վաչիկը, դու ու ես, գիշերը, երբ բոլորը քնած էին, գնացինք անտառ։

— Իսկ ջոկատավարը,— բողոքեց Նորիկը.— չէ՛, որ նա էլ մեզ հետ նույն պալատում է քնում։

— Դե մենք թաքուն, անձայն...

— Լա՛վ,— մի կերպ համաձայնեց Նորիկը,— հետո՞։

— Անտառի խորքում, հանկարծ մեր դեմ դուրս եկավ մի մեծ արջ։ Ես մեռած ձևացա, իսկ դու ու Վաչիկը բարձրացաք ծառը։

— Չէ՛,— բողոքեց Նորիկը.— ինչո՞ւ դու, ես մեռած ձևացա։ Նա պիտի մտածի, որ ես ընկերներիս թողել եմ վտանգի մեջ ու ծառ բարձրացել։ Հետո արջը մոտեցավ, շուռ ու մուռ տվեց ինձ, հոտոտեց...

— Լա՛վ,— ընդհատեց նրան Աշոտը,— հետո ականջից կարծես ինչ-որ բան ասաց... Ախր, այդպիսի մի պատմվածք կա, չեղավ։

Դուցե այդ պատմվածքը նա չի կարդացել, ինչ գիտես։

— Չէ՛, չեղավ. ուրիշ բան մտածենք։

Տղաները նորից պառկեցին ու սկսեցին նայել երկնքին։

Գետակում մի տղա էր խեղդվում,— տեղից ցատկելով սկսեց Աշոտը։— Մենք նետվեցինք ջուրը՝ ազատելու...

Երկուսով մեկի՞ն,— ընդհատեց Նորիկը։

— Ի՞նչ կա որ։

— Լա՛վ։ Ո՞ր գետակում, այս մեր ճամբարի գետակում մարդ կարո՞ղ է խեղդվել։ Ջուրը ծնկներից էլ ցած է...

— Դե, ասենք շատ փոքր պիոներ, հոկտեմբերիկ։

— Չէ՛, չէ՛։

Հեռվից լսվեցին ծանոթ մեղեդու հնչյուններ։ Դա այն երաժշտությունն էր, որ նվագում էր Վաչիկը՝ «Երկնագույն աղջիկների պարը»։



Տղաները բարձրացան տեղից։ Վերևից, դանդաղ քայլերով դեպի ծորակն էր իջնում մի տղա։ Նվագողը նա էր։

— Է՜յ, է՜յ,— իրարից անկախ կանչեցին Աշոտն ու Նորիկը։

Շրթհարմոնիստը մի պահ կանգ առավ, կողմնորոշվեց, ապա մի փոքր արագացնելով քայլերը՝ մոտեցավ։

— Դուք չորրորդ ջոկատի՞ց եք,— հնչյունները դժվարությամբ արտասանելով հարցրեց տղան։

— Այո՛,— միաբերան պատասխանեցին Աշոտն ու Նորիկը։— Դո՞ւ ես նորեկը։

— Ես եմ։ Ծանոթանանք. Արամ։

— Ե՛կ, ա՛յ այստեղ պառկիր, — ասաց Նարեկը։

— Շնորհակալ եմ, — ասաց Արամը և տեղավորվեց։

— Դու «Երկնագույն աղջիկների պարը» չէ՞ր, որ նկարում էիր, — հարցրեց Նարեկը։

— Այո՛, — ասաց Արամը, — ապրիլից եմ սկսել։ Արտասահմանում ամեն գիշեր լսում էինք։

— Դու որտեղի՞ց ես ներգաղթել, — հետաքրքրվեց Աշոտը։

— Կիպրոսից։

— Կիպրոս կղզու՞ց։

— Այո՛։

— Ուրեմն լավ լողալ գիտես, չէ՞։ — Հետո նայեց Նարեկին և անմիջապես շարունակեց. — Մենք էլ լողալ գիտենք։ Մի անգամ... — Աշոտը լռեց։

Արամը նայեց, շրթհարմոնը գրպանը դրեց, մաքրեց կոկորդը։

— Մի անգամ իմ ընկերոջ հետ շատ հեռու լողացինք։ Տղան սկսեց խեղդվել։ Ալիքների դեմ կատաղի պայքար մղելով ազատեցի Արմենակին։

Աշոտն ու Նարեկը զարմացած և հիացած հայացքներ փոխանակեցին։

— Իսկ հիմա ո՞ւր է Արմենակը, — հետաքրքրվեց Նարեկը։

Արամը անհարմարից տխրեց և կախեց գլուխը։

— Այնտեղ մնաց։ Կիպրոսում։ Շատ էր ուզում գալ, չհաջողվեց։

— Ափսո՜ս, — ասաց Նարեկը։

Արամը նորից հանեց շրթհարմոնը ու սկսեց մեղմ նվագել «Երկնագույն աղջիկների պարը», հետո կիսատ թողեց, բարձրացրեց գլուխը ու կամացուկ սկսեց խոսել։

— Գիտե՞ք ինչ, տղանե՛ր, Արմենակը իմ ամենամոտ ընկերն է։ Բայց այնտեղ մնաց։ Ես խաբեցի, լողալ գիտեմ, բայց լավ չգիտեմ։ Արմենակի հետ լողում էինք ծովում, հետո ինչ էր մնում խեղդվեի՝ ալիքները՝ ես ափից շատ։ Նա ինձանից ավելի լավ էր լողում։ Այնպես որ նա ինձ փրկեց։ Գիտե՞ք, նա իմ շատ մոտիկ ընկերն էր, կամ ես, կամ նա՝ միևնույն է։ Դրա համար էլ ես սկզբում այդպես ասացի։ Ներեցե՛ք։ Նա մնաց այնտեղ։ Շատ էր ուզում գալ, ասացին՝ տեղ չկա։ Բայց կգա՝ չէ՞, տղաներ։

— Իհարկե՛, իհարկե՛, բոլորը կգան։

— Բոլո՞րը, — կրկնեց Արամը։

Հետո երեքն էլ նորից պառկեցին խոտերի մեջ ու սկսեցին նայել երկնքին, որ շող ու մութ էին գալիս ամպերի ծվենները։

Արամը մեղմ սկսեց նվագել, իսկ ամպերը ենթարկվեցին երաժշտության հնչյուններին։

Դա ճիշտ այնպես էր, ինչպես նախորդ տարիներին, երբ նկարում էր Վաչիկը։

Երեքն էլ մտածում էին Արմենակի մասին։

Իսկ Աշոտին ու Նարեկին նույնիսկ թվում էր, որ Վաչիկն ու Արմենակը վաղուցվա, շատ վաղուցվա ընկերներ են։

## ԲՆՈՒԹՅԱՆ ՄԵՋ

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ

Մեր դեմ բացվել են ամռան դռները,
Բուրում են, ժպտում ծաղիկ ու սեզ,
Վաղ լուսաբացին հայոց լեռները
Սեզ կատարներով թովում են մեզ։
Թռչունի ուսին խաղում է լույսը,
Ահա կանգնել ենք մենք վերևում,
Մեզ Արագածն է ցույց տալիս ուսը,
Եվ Զաթինդաղն է պարզ երևում։
Զնգում է, զնգում մենության զանգը,
Մեր սրտերի մեջ ծայնում լռին,
Եվ բարձրանում է մեր երազանքը,
Փարվում լեռներին ու եթերին։
Մաքուր ցողն ասես երկնային կաթ է,
Նստել է թավիշ խոտի վրա,

Մայր բնությունը մի խոր հեքիաթ է,
Եվ անսահման է խորքը նրա։
Հրաշքներ ունի մայր բնությունը,
Ճամփորդի սիրտն է լցնում սիրով։
Այս մենությո՜ւնը, այս լռությո՜ւնը,
Իր անմեկնելի խորհուրդներով։
Այնքան անուշ է քամու համբույրը
Այս շոգ ամռանը, սեզ կատարին,
Պաղ ջուր է տալիս զուլալ աղբյուրը
Ե՛վ ծանոթ մարդուն, և՛ օտարին։
Հայոց լեռներում երգում է կյանքը
Նման անտրտունջ մի թռչունի։
Օ՛, մայր բնություն, քո կախարդանքը,
Քո երազանքը ոչ ոք չունի։






ԳՈՒՐԳԵՆ ՄԱՀԱՐԻ

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

*Երբ ես տասնվեց տարեկան էի, ամառային արձակուրդին գնացի Լենինական, հորեղբորս մոտ, հանգստանալու։*

*Այն ժամանակ Լենինականը դեռ կոչվում էր Ալեքսանդրապոլ, և ես գնացի այնտեղ ոչ միայն հանգստանալու դպրոցական պարապմունքներից, այլև Երևանի շոգերից։ Զով էր ամառը Լենինականում, Երևանի հետ համեմատած դա մի ամառանոց էր։ Կլիմայական այս առավելությունից բացի, ես Լենինական գնացի, հորեղբորս մոտ, որովհետև շատ էի սիրում նրան։ Նա վերին աստիճանի խիստ վարք ու բարքի և միաժամանակ զգայուն սրտի տեր մարդ էր։ Ես նրա մոտ գնացի նաև այն պատճառով, որ նրա որդիների, Վարդանի ու Գառնիկի հետ կարելի էր ուրախ անցկացնել արձակուրդը։*

*Հորեղբայրս ապրում ու աշխատում էր Կազաչի Պոստում. այս Կազաչի Պոստը զորանոցների նախկին մի ավան էր։ Այդ զորանոցներում ապրում էին բազմահազար որբեր։ Այնտեղ կար դպրոց, հիվանդանոց, ճաշարան, գրադարան։*

*Բայց այդ մասին չէ, որ ես պիտի պատմեմ։*

*Հորեղբայրս շատ ուրախացավ իմ գալստյան համար։ Նա գրկեց ինձ, համբուրեց և ասաց.*

*— Վարդանը գիշեր-ցերեկ ջութակ է նվագում։ Գառնիկի հետ քիչ-քիչ պարապիր։ Նա արդեն ճանաչում է գրերը։*

*Ես մեծ էի և՛ Վարդանից, և՛ Գառնիկից։ Այս պատվավոր հանձնարարությունը սակայն ավելի բարձրացրեց իմ հեղինակությունը Վարդանի և Գառնիկի աչքին։*

*Հորեղբայրս ծխող էր։ Գրեթե շաբաթը մեկ անգամ նա մի երկտող էր տալիս ինձ և ես գնում էի խանութի վարիչ Պողոսի մոտ ու ծխախոտ էի բերում նրա համար «կանխիկ վճարով», ինչպես գրում էր իր երկտողում հորեղբայրս։ Նա ծխախոտը լցնում էր մի փոքրիկ, թիթեղե ամանի մեջ, ամեն առավոտ լցնում էր գրպանի տուփը ծխախոտով, ծխախոտի նուրբ թուղթը սեղմում էր նրա վրա, գլորում և գնում աշխատանքի։*

*Մի անգամ, երբ Վարդանը դրսում, բացօթյա նստարանի վրա նստած մեծ եռանդով ջութակ էր նվագում, իսկ Գառնիկը նրա կողքին իմ տված դասն էր սերտում, ես վերցրի հորեղբորս ծխախոտի թիթեղե ամանը և բաց արեցի։ Այնտեղ թուղթ էլ կար։ Սկսեցի անվարժ մատներով մի ծխախոտ փաթաթել։ Թուղթը ճեղքվեց։ Փորձեցի երկրորդ անգամ։ Չհաջողվեց։ Վերջապես մի քանի թուղթ փչացնելուց հետո ինձ հաջողվեց մի ծուռտիկ ծխախոտ սարքել։ Լուցկու գործը հեշտ էր։ Նայեցի բաց պատուհանից դուրս։ Վարդանն ու Գառնիկը տարված էին իրենց գործով։ Ես վառեցի լուցկին։*

*Չեմ կարող ասել, որ հաճույքը մեծ էր։ Առանձին բավականություն չստացա։ Ծուխը մտավ աչքս, ծխախոտի մի քանի թելիկներ կպան լեզվիս, և բերանս դառնացավ։ Բայց այն միտքը, որ ես Գառնիկի ուսուցիչն եմ և կարող եմ ծխել, ինձ իմ աչքին մեծացնում էր։ Եթե այդ րոպեին ես նայեի հայելուն և ինձ տեսնեի հորեղբորս սև, թավ բեղերով և որբանոցների ընդհանուր կառավարիչ պարոն Վահանի մորուքով, երևի չզարմանայի...*

*Երեկոյան եկավ հորեղբայրս։ Ես անզգուշությունից ծխախոտի թուղթը չէի դրել իր տեղը. սեղանի վրա թափթփված էին ծխախոտի թելիկներ. հորեղբայրս հավաքեց ծխախոտի թելիկները, պատուհանից դուրս նետեց, ծխախոտի թուղթը դրեց իր տեղը և նստեց օրվա թերթը կարդալու։ Ես ինձ զգում էի բռնված հանցագործի նման, սպասում էի, որ հորեղբայրս պիտի սկսի հարց ու փորձ անել, բայց նա լուռ թերթ էր կարդում։*

*Մի՞թե հորեղբայրս ոչինչ չկասկածեց։*

*Դրանից հետո ես գրեթե ամեն օր գաղտնի ծխում էի. ես սովորեցի ավելի մեծ վարպետությամբ ոլորել ծխախոտը և կարող էի մինչև անգամ քթիցս ծուխ հանել։*



Մի անգամ էլ, երբ ես զբաղված էի բթից ծուխ հանելու արվեստը կատարելագործելով, հորեղբայրս մտավ նախասենյակ։ Ինձ հաջողվեց բաց պատուհանից ծխախոտի մնացուկը դուրս նետել, բայց...բայց սենյակում կանգնած էր, ավելի շուտ օրորվում էր ծխի նոսր մի քուլա։ Հորեղբայրս ներս մտավ, ոչինչ չնկատեց, հարցրեց ինձ դասերի ընթացքի մասին, նայեց Գառնիկի տետրակները, գոհ մնաց, շոյեց իմ գլուխը և նստեց թերթ կարդալու։ Այս դեռ բավական չէր, նա գլուխը բարձրացրեց թերթից և ժպտալով ու մինչև անգամ հարգալից, ասաց. Կարդա այս հոդվածը, հետաքրքիր հոդված է...

Իմ զարմանքը չափ ու սահման չուներ։ Մի՞թե հորեղբայրը դարձյալ ոչինչ չնկատեց...

Իսկ երբ մյուս օրը ես իմ գրպանում գտա պատրաստի ծխախոտների դեռ չբացված մի տուփ լուցկու հետ միասին, իմ զարմանքը փոխվեց դառնության։ Կասկածից դուրս էր, որ հորեղբայրս ամեն բան գիտեր և այս ձևով... Մի՞թե քաջալերում էր նա իմ ընթացքը. այդ անհնարին էր... Երկար մտածելուց հետո, ես եկա այն եզրակացության, որ հորեղբայրս ինձ հանդիմանում էր այսպես վարվելով...

Իսկ ես...

Այդ օրը ես նրա ծխախոտին ձեռք չտվի, իմ ծխախոտի տուփը դրի սեղանի վրա և որոշեցի այլևս չծխել։

Հորեղբայրս կարծես ոչ մի ուշադրություն չդարձրեց սեղանին առոր-փառոր բազմած ծխախոտի տուփի վրա։ Երկրորդ օրը ես բացեցի ծխախոտի տուփը և մի գլանակ վերցնելով հոտոտեցի։ Մեղմ էր բուրում գլանակը. մտածեցի և այն, որ մի ծխախոտի բացակայությունը դժվար թե նկատի հորեղբայրս և արժե գոնե մի անգամ փորձել այս պատրաստի գլանակի ծխի համն ու հոտը...

Ես էլ չիմացա, թե ինչպես վերցրի լուցկին, վառեցի և սկսեցի ծխել։

Երկրորդ օրը նույնպես ես չկարողացա դիմանալ փորձությանը և ծխեցի երկու ծխախոտ, իսկ երրորդ օրը...

Այդ օրը կիրակի էր։ Հորեղբորս մոտ եկել էին իր ընկերները։ Նստած սեղանի շուրջ նրանք սուրճ էին խմում և ծխում։ Վարդանը սենյակի մյուս ծայրում նստած՝ իր ջութակն էր նվագում, իսկ Գառնիկը սերտում էր իր տված դասը։

Հորեղբայրս նստեցրեց ինձ իր կողքին, ըստ իր սովորության շոյեց մազերս և շարունակեց իր զրույցը հյուրերի հետ։ Հետո, կարծես ի միջի այլոց, առանց ընդհատելու խոսքը, վերցրեց «իմ» ծխախոտի տուփը, մի գլանակ հանեց և պարզեց ինձ.

— Վերցրո՛ւ...

# ՄԵՐ ՃԱՄԲԱՐԸ

ՍԱՂԱԹԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Սարի տակ կա մի աղբյուր,
Ջուրը վճիտ ու մաքուր.
Աղբյուրի մոտ մի ծառ կա՝
Կաղամախի մի հսկա։
Ծառի մոտ կա մի շավիղ.
Ու թե իջնես դու ուղիղ.
Կհանդիպես վրաններ.
Դա էլ ճամբարն է հենց մեր։

Հետաքրքիր ի՜նչ ասես
Մեր ճամբարում կգտնես.
Է՛լ երգ ու պար, է՛լ խաղեր.
Է՛լ հերբարիում, է՛լ քարեր,
Քարեր տարբեր երանգի՝
Է՛լ հասարակ, է՛լ անգին։
Մի տեղ ծաղիկ են քաղում,
Մի տեղ թենիս են խաղում,
Սովորում են մի տեղ պար
Մյուսում՝ մի աճպարար
Ինչ-որ բաներ է անում.

*Ես շփոթվեցի, իսկ սեղանակիցներս զարմացան.*

*— Վերցրո՛ւ,— կրկնեց հորեղբայրս գլխարկը դրնելով մատներիս մեջ և մի լուցկի վառեց:*

*— Ծխի՛ր...*

*Հետո դարձավ սեղանակիցներին.*

*— Մեր Գուրգենը շատ է սկսել ծխել, բայց նա չի սիրում գաղտնի ծխել: Գաղտնի ծխելը ամոթ բան է...*

*— Այդ տարիքում ծխելը, գաղտնի թե ոչ գաղտնի, առհասարակ ամոթ բան է,— դատեց պարոն Վահանը:*

*Հորեղբայրս մարեց լուցկին և ժպտաց.*

*— Ես կատակ արի, Գուրգենը չի ծխում ոչ գաղտնի և ոչ էլ հրապարակով: Մեր Գուրգենը շատ խելոք և հասկացող տղա է:*

*Ներսիցս մի բան բարձրացավ և սեղմեց կոկորդս: Ես չկարողացա ինձ զսպել, փաթաթվեցի հորեղբորս և արտասվեցի:*

*Հորեղբայրս շոյում էր գլուխս և շարունակում իր ընդհատված զրույցը: Հյուրերը, երևի հասկանալով գործի էությունը, ցույց տվին, որ չեն տեսնում իմ արցունքները, լսում էին հորեղբորս մեծ ուշադրությամբ:*

*Ես այլևս չծխեցի:*



## ԱՔԼՈՐՆԵՐԸ

Աչքից ծաղիկ է հանում.
Իսկ լեռնային ջինջ լճում,
Ջրերի մեջ պաղպաջուն
Լողանում են, չոփ անում,
Արևի տակ տաքանում:
Հետաքրքիր ի՛նչ ասես
Մեր ճամբարում կգտնես,
Բայց դու ճամբար մի՛ գնա,
Կաղամախու տակ մնա
Ու կտեսնես հրաշք բան...
... Սոսն ու Կարենը անբան,
Քիթ ու բերան արնոտած,
Ահա իրար պինդ կպած,
Ճղճղում են, թավալվում,
Խոզապառկուկ են անում...
Բայց խոզեր չեն նրանք, չէ՛
Ուզում եմ որ ճանաչեք՝
Դրանք «անվախ ու արի»
Աքլորներն են ճամբարի:

# ԲԱՄԲՈՒԿ

### ՄԿՐՏԻՉ ԱՐՄԵՆ

(Բինալի Իվոնիմի հեքիաթներից)

Ո՞վ չգիտե մեր փոքրիկ կղզու մասին, որը գտնվում է Խաղաղ օվկիանոսում: Սրանից հարյուր տարի առաջ, երբ կղզին զավթեցին գաղութարարները, նա հայտնի դարձավ շատերին: Իսկ երբ մի քանի տարի առաջ մեր փոքրաթիվ ժողովուրդը թոթափեց գաղութային լուծը, մեր կղզու մասին իմացավ ամբողջ աշխարհը:

Բայց կար ժամանակ, երբ նրա մասին չգիտեր ոչ ոք, բացարձակապես ոչ ոք: Եվ մենք էլ չգիտեինք մնացյալ աշխարհի մասին: Մեր կարծիքով աշխարհը միայն մեր կղզին էր, որի շուրջը, մինչև հորիզոն, և, անշուշտ դրանից էլ այն կողմ, տարածված էր ջո՜ւր և ջո՜ւր:

Մեր մասին չգիտեին, որովհետև նավերի ոչ մի ճանապարհ չէր անցնում մեր կողմերով: Իսկ մենք մնացյալ ամբողջ աշխարհի մասին չգիտեինք, որովհետև մեր կղզին միայնակ ընկած էր անսահման ջրերի մեջ և հորիզոնի ոչ մի կողմում չէր երևում գոնե մի փոքրիկ կղզյակ:

Ճիշտ է, մի սրատես ծերունի, երբեմն-երբեմն, երկնքի ամենապարզ օրերին, նայում էր դեպի հեռու հորիզոնը և բղավում, որ նա այնտեղ տեսնում է ինչ որ անշարժ մուգ բիծ, բայց ոչ ոք չէր հավատում նրան, որովհետև ոչ ոք, նրանից բացի, չէր տեսնում այդ մուգ բիծը:

Իսկ այդ ծերունին, իրոք որ, շատ սրատես էր: Նա...

Ի միջի այլոց, ես այնպես եմ պատմում այս բոլորի մասին, կարծես իմ աչքով եմ տեսել: Ո՛չ, ո՛չ, այն ամենը, ինչի մասին պատմեցի և դեռ պիտի պատմեմ, կատարվել է շատ հին ժամանակներում, և դրա մասին ես ու մեր կղզու բոլոր մյուս բնակիչները գիտենք միայն ավանդություններից:

Ուրեմն, ինչպես ասացի, այդ ծերունին, իրոք որ, շատ սրատես էր: Նա կարող էր իրենից հարյուր ոտք հեռավորության վրա նկատել խոտի վրա նստած բզեզին: Ստուգում էին՝ ճիշտ է, բզեզ է: Բայց երբ ասում էր, որ անշարժ մուգ բիծ է տեսնում հորիզոնի վրա՝ ոչ ոք չէր հավատում...

Մեր կղզին տափակ է՝ սեղանի պես: Դուք պիտի հարցնեք՝ ի՞նչպես էր ուրեմն, որ օվկիանոսի ջրերը չէին ծածկում կղզին: Ասեմ: Ճիշտ է, տափակ էր՝ սեղանի պես, որի պռունգները կամաց-կամաց իջնելով, կորչում էին ջրի մեջ, բայց օվկիանոսի մակերեսից բարձր էր մարդու մի քանի հասակի չափ: Իսկ օվկիանոսի ջրերը, այնուամենայնիվ, երբեմն-երբեմն ծածկում էին կղզին:

Այո, ծածկում էին. բայց ոչ ամբողջովին, այլ կենտրոնում թողնելով մի փոքրիկ արծակ տարածություն: Այդպիսի դեպքերում մեր փոքրիկ ժողովուրդն շտապ հավաքվում էր այնտեղ և սպասում օվկիանոսի զայրույթի իջնելուն:

Հիմա մեր կղզու խորհրդանշանի վրա նկարված է բամբուկ: Իսկ այն հին ժամանակներում, որի մասին պատմում եմ, մեր կղզու վրա բուսնում էր միայն խոտ և ուրիշ ոչինչ: Ուրիշ ոչինչ, ասում եմ ձեզ:

Պիտի հարցնեք՝ ուրեմն ինչո՞վ էինք ապրում մենք: Այդ խոտն ուտում էին զանազան կենդանիներ, իսկ մենք ուտում էինք նրանց: Ես ասում եմ՝ «զանազան կենդանիներ», որովհետև անունները չգիտեմ: Դրանք հիմա չկան աշխարհում ոչ մի տեղ: Ասում են, ինչ-որ թանգարանում կա դրանցից մեկի կմախքը, այն էլ՝ ոչ լրիվ:

Մենք ուտում էինք նաև խոտի մի քանի տեսակներ, մանավանդ՝ դրանց արմատները: Եվ, իհարկե, հավաքում-ուտում էինք այն ձկներն ու կենդանիները, որոնք օվկիանոսը հաճախ շպրտում էր ափ:

Հագուստ չունեինք, մեր ինչի՞ն էր պետք հագուստը, երբ մեզ մոտ միշտ տաք էր: Ոչ թե անտանելի շոգ, այլ հենց տաք: Եվ տներ էլ չունեինք, քնում էինք՝ որտեղ որ պատահեր, բաց երկնքի տակ:

Այդպես էինք ապրում:

Մի գիշեր սոսկալի ալեկոծություն էր բարձրացել և մենք քնել էինք կղզու կենտրոնում, ինչպես որ անում էինք նման դեպքերում: Առավոտյան, երբ արթնացանք, զարմանքից ճչացինք:

Օվկիանոսն ափ էր շպրտել, ավելի ճիշտ՝ բերել հասցրել էր համարյա մինչև կղզու կենտրոնը, մի ինչ-որ անծանոթ, հսկայական առարկա, շատ մեծ ու բարձր: Մենք, իհարկե, չգիտեինք, որ դա խորտակված նավի մի անգին բեկոր է: Չէ՞ որ մենք սարսափահար փախանք դրա մոտից, ապա սիրտ առնելով, կամաց-կամաց մոտեցանք: Նայեցինք չորս կողմից, զննեցինք, իսկ սրատես ծերունին մինչև իսկ բարձրացավ դրա կատարը, նայեց դեսուդեն, նայեց դեպի հորիզոն և նորից սկսեց իր հին երգը. «Տեսնում եմ անշարժ մուգ բիծ, ավելի լավ եմ տեսնում, քան առաջ: Եվ նա ավելի մեծ է...»

Ուրիշներն էլ բարձրացան նավի բեկորի վրա, թերահավատ նայեցին: Բայց որքա՜ն մեծ եղավ նրանց զարմանքը, երբ համոզվեցին, որ նրանք էլ են տեսնում անշարժ մուգ բիծը հորիզոնի վրա: Ուրեմն ծերունին իրավացի էր եղել ամբողջ ժամանակ, ուրեմն մենք իզո՛ւր չէինք հավատացել նրան և նույնիսկ ծաղրել էինք...

Եվ, իսկապես, հո օվկիանոսի ջրերը չէի՞ն ծնել կղզի շպրտված այդ անծանոթ առարկան: Ջրերը միայն ձուկ են ծնում և ուրիշ կենդանիներ: Իսկ այդ առարկան ձուկ հո չէ՞ր: Նշանակում է՝ աշխարհը չի վերջանում մեր կղզիով, նշանակում է կան նաև ուրիշ կղզիներ, ուրիշ մարդիկ...

Իհարկե, դրան շատ դժվար էր հավատալ: Մենք բոլորս հիանալի գիտեինք, որ մեր կղզին բոլոր կողմերից վերջանում է, և այնուհետև սկսվում է ջուրը: Ուրեմն ինչպե՞ս կարող է նորից սկսվել մի ուրիշ կղզի... Ա՛յ, ուրիշ բան է, եթե մեր կղզին մի որևէ տեղ չվերջանար, այլ ձգվեր, երկարեր, գնար մինչև հորիզոն և այնտեղ նորից լայնանար, դառնար մի այլ կղզի: Բայց ոչ մի այդպիսի բան չկար... Ո՛չ, մենք անկարող էինք պատկերացնել ուրիշ կղզի...

Մենք դեռ հավաքված, նայում էինք անծանոթ առարկային, երբ ձուկ հավաքելու համար ափ գնացած մարդիկ, վազվզելով եկան և հայտնեցին, որ օվկիանոսն ափ է շպրտել նաև մի քանի մարդկանց դիակներ...

Բոլորը սրարշավ սլացան ափ և տեսան անշարժ պառկած սպիտակ դեմքերով ու ձեռքերով երկու տղամարդու և մի կնոջ...

Այլևս կասկած չկար. աշխարհը չէր վերջանում մեր կղզիով, կային նաև ուրիշ կղզիներ, որտեղ ապրում էին ուրիշ մարդիկ: Մենք դարեր շարունակ ապրել էինք մեր կղզու վրա և չէինք իմացել այդ մասին...

Այդ օրվանից մի անասելի կարոտ պաշարեց մեզ բոլորիս: Մենք ուզում էինք տեսնել մեզ նման ուրիշ, անծանոթ մարդկանց, տեսնել մնացյալ աշխարհը: Այժմ, օրվա որ ժամին էլ գնայիր ափ, կտեսնեիր այնտեղ նստած մարդկանց, որոնք ժամեր շարունակ նայում էին հորիզոնին և հառաչում:



Զարմանալի կլինի, եթե ասեմ, որ մենք լողալ չգիտեինք: Ո՞ւր լողայինք, մեր ինչի՞ն էր պետք լողալը: Բայց այժմ մարդիկ սկսեցին մտածել այդ մասին. գուցե լողալով հասնենք այնտեղ, հը՞: Շատերը փորձեցին: Ոմանք խեղդվեցին, իսկ ոմանք ետ դարձան կես ճանապարհից:

Մի անգամ, ափի մոտ նստած մի երիտասարդ, նայելով իր ոտքերի տակ, տեսավ, թե ինչպես ջրի վրա տատանվում էր մի ծղոտ, իսկ ծղոտի վրա



ամուր նստած, իր կյանքն էր փրկել մի շատ փոքրիկ բզեզ։

Այդ երիտասարդն, անշուշտ, շատ խելացի տղա էր, որովհետև իսկույն սկսել էր մտածել, ավելի շուտ՝ երազել։ Ա՜յ, ինչ լավ կլիներ, եթե լիներ մի այդպիսի ծղոտ, բայց մեծ, շատ մեծ, որը կարողանար ջրի վրա պահել ոչ թե բզեզի, այլ մարդու ծանրությունը։ Ա՛յ այն ժամանակ...

Նա իսկույն վեր էր ցատկել, վազ էր տվել կղզու խորքը և, այսպես է պատմում ավանդությունը, սկսել էր խոտերի մեջ փնտրել ամենահաստն ու ամենաերկարը։ Նա չէր թաքցրել իր նպատակը մարդկանցից, և մարդիկ քահ-քահ ծիծաղել էին նրա վրա՝ կարծելով, թե նա ուզում է այդ խոտին հեծած՝ իսկույն սլանա դեպի հեռավոր կղզին։

Բայց մի՞թե այդպիսի բան կարող էր մտածել նրա պես խելոք տղան։ Նա իր ընտրած մեծ խոտի շուրջը քաղել, դեն էր նետել մյուս խոտերը, որպեսզի այդ մեկն ազատ զարգանար, առատ սնունդ ու արև ունենար։

Մեր կղզու վրա հավիտենական գարուն էր, և խոտն այնտեղ մի տարում անում էր երեք-չորս անգամ։ Երբ տղայի ընտրած խոտը սերմեր էր տվել, իսկ սերմերը՝ նոր սերունդ, տղան նորից ընտրել էր դրանցից ամենամեծը և ոչնչացրել մնացյալ բոլորը։

Ո՜վ մարդկային համբերություն... Տարվա վերջին, նայելով տղայի ընտրած խոտի չորրորդ սերընդին, ոչ ոք չէր կարողացել նկատել որևէ տարբերություն դրա և մյուս խոտերի միջև։ Բայց երիտասարդ տղան հավատացել էր, որ ինքը տեսնում է մի փոքր տարբերություն, այդ խոտը մի քիչ ավելի երկար և հաստ է, քան մյուսները։

Թուցե նա իրեն էր խաբում, գուցե, ընդհակառակը, սրատես էր՝ այն ծերունու նման։

Երիտասարդ տղան մինչև խոր ծերություն զբաղվել էր այդ գործով։ Իսկ մեռնելուց առաջ ավանդել էր իր որդուն։ Մարդիկ ծիծաղել էին նաև որդու վրա, բայց թոռան վրա այլևս չէին ծիծաղել, որովհետև այժմ նրանք էլ էին նկատել, որ ընտրված խոտն զգալի կերպով ավելի երկար ու հաստ էր, քան որևէ մի ուրիշը կղզու վրա։

Ո՞վ իմանա, քանի՜ սերունդ էր անցել, երբ սովորական խոտը դարձել էր եղեգնի չափ։

Բայց մի՞թե կարելի է եղեգը նետել ջրի վրա և կառչել դրանից։ Թեկուզ և նետեիր ոչ թե մի եղեգն, այլ մի ամբողջ խուրձ...

Շարունակել էին աճեցնել եղեգն դարձած խոտը։ Այժմ այդ գործով ոչ թե միայն համառ երիտասարդի սերունդն էր զբաղվում, այլև կղզու բոլոր մյուս բնակիչները։ Ոմանք ջրում էին՝ երաշտ ժամանակ, ոմանք պաշտպանում էին հեղեղներից, ոմանք հողն էին փափկացնում դրանց շուրջը։ Չէ՞ որ այժմ բսնում է ոչ թե մի եղեգն, այլ մի ամբողջ թփուտ։ Եվ երբ հայտնվում էին առավելապես մեծ թփեր, բնակիչները նորից անխնա ոչնչացնում էին ավելի փոքրերը։

Բոլորը գիտեին, որ իրենք չեն տեսնելու երջանիկ օրը։ Բայց գոնե նրանց թոռները կամ ծոռները մի օր պիտի այդ խոտերի վրա նստած՝ լողային դեպի հեռավոր կղզին։

Դուք տեսե՞լ եք բամբուկ։ Ո՛չ բոլորդ։ Դա իր տեսքով իսկական խոտ է, միայն թե մարդու հասակից մի քանի անգամ բարձր։ Իսկ հաստությունը լինում է մարդու բազուկի, մինչև իսկ ոտքի հաստության։ Խոտի նման, բամբուկը նույնպես սնամեջ է, այսինքն՝ բունը դատարկ է։ Խոտի ցողունի նման, բամբուկի բունը նույնպես, տեղ-տեղ փակված է միջնապատով, կարծես վերցրել են երկու ծայրերի փակ խողովակներ և կցել իրար հետևից։ Բունը լիքն է օդով։ Դրա համար էլ, բամբուկը չի սուզվում ջրի տակ, այլ հիանալի մնում է ջրի վրա և դեռ իր հետ կարող է պահել բավական մեծ ծանրություն։

Վերջապես մեր նախահայրերին հաջողվել է աճեցնել այդպիսի բամբուկ, բամբուկի մի իսկական անտառ։ Դրա խիտ կանգնած բարձր բները բոլոր կողմերից շրջապատել են մեր կղզին և այն էլ այնքան լայն շերտով, որ աչքից ծածկել են օվկիանոսը։

Ահա այդ ժամանակ մեր նախահայրերից մեկը, վերջապես, ասել է.

— Արդեն ժամանակն է...

Եվ ահա...

Ոչ՛, ո՛չ։ Դուք կարծում եք, թե իսկույն նստել



են բամբուկի բների վրա և իրենց հանձնել օվկիանոսի ալիքների՞ն: Այո, վարվել են այդպես, բայց շուտով հրաժարվել են այդ անմիտ քայլից:

Եվ տարիներ շարունակ նրանց համար սկսել է մի նոր չարչարանք: Ինչպե՞ս խոտից հյուսված պարաններով բամբուկի բները կապել իրար հետ, դարձնել լաստ: Ինչպե՞ս ուղղել այդ լաստը դեպի հորիզոնի այն կողմը, որտեղ կանգնած է խորհրդավոր մուգ բիծը...

Հնարել են թիեր, ղեկ: Հեշտ է ասել՝ թիեր, ղեկ: Բայց քանի՜-քանի՜ տարիներ են անցել, քանի՜-քանի՜ ապարդյուն ջանքեր են թափել, մինչև որ հնարել են թիեր, ղեկ...

Հետո հասկացել են, որ ավելի լավ է՝ լաստը կազմել ոչ թե բամբուկի մի շերտից, այլ մի քանի: Եվ ջուրը չի ծածկի լաստի մակերեսը, և ավելի դիմացկուն կլինի լաստը: Հետո հասկացել են, որ կարելի է նույն բամբուկից մի տնակ սարքել լաստի վրա: Ի միջի այլոց, բամբուկի տներ են սկսել սարքել նաև կղզու վրա: Մենք հիմա էլ ենք ապրում այդպիսի տներում: Համեցեք մեր կղզին, տեսե՛ք:

Ամեն տարի մենք տոնում ենք այն օրը, երբ, վերջապես, մեր կղզու մարդիկ, մեր նախահայրերը, իրենց առաջին լաստով պոկվել են մեր կղզուց և, շատ օրեր ջրերի վրա թափառելուց հետո, հասել հորիզոնի վրա երևացող մուգ բծին: Ճիշտ է, պարզվել է, որ դա կղզի չէ, այլ մի մեծ ժայռ, բայց դրա մոտից արդեն, երևացել են իսկական կղզիներ՝ ավելի հեռվում:

Մնացյալը դուք գիտեք: Կապվելով աշխարհի հետ, մենք իմացանք և տեսանք շատ բան, որ չգիտեինք: Բերեցինք անծանոթ և շատ արժեքավոր տեսակ-տեսակ բույսերի սերմեր կամ ծառերի շիվեր, սկսեցինք աճեցնել, սկսեցինք պահել նորանո՛ր կենդանիներ, իմացանք, թե ինչ բան է փայտը, երկաթը... Լաստերին փոխարինեցին նավեր, ապա՝ շոգենավեր...

Չնայած դրան, եղել է ժամանակ, երբ մեր կղզու բնակիչները դառը զղջացել են աշխարհի հետ կապվելու իրենց դարավոր դառը չարչարանքի համար: Աշխարհից մեզ մոտ եկել է ոչ թե երջանկությունը, այլ ագահ ու դաժան մարդկանց մի խումբ, որը շահագործել, տանջել, սպանել կամ գերության է տարել մեր մարդկանց, իրեն է վերցրել այն բարիքները, որոնք սկսել են աճել մեր կղզու վրա...

Բայց մենք կապվել ենք աշխարհի մյուս, մեզ նման մարդկանց հետ, որոնք նույնպես տանջվել են շահագործողների լծից: Ու եթե այսօր մենք ազատ ենք, ապա շնորհիվ այն բանի, որ նրանց հետ միասին ենք պայքարել գաղութարարների դեմ:

Իսկ բամբո՞ւկը... Ի՞նչ կարող եմ ասել այլևս: Գուցե այդպես է ստեղծվել բամբուկը, ինչպես պատմեցի, գուցե ուրիշ կերպ: Բայց ամեն ժողովուրդ ունի իր ավանդությունները և իր երազանքները: Մեր կղզու ժողովրդի ավանդությունն էլ այն է, որ մենք ենք ստեղծել բամբուկը և պարգևել աշխարհին:

Թող այսպես էլ մնա: Գուցե դա ճիշտ է: Ոչ բամբուկը կտուժի դրանից, ոչ էլ մարդիկ: Ամեն մի ժողովուրդ, որքան էլ փոքր, որևէ բան տալիս է աշխարհին, մյուս ժողովուրդներին: Եվ եթե մենք չենք տվել բամբուկը, ապա գոնե տվել ենք բամբուկի մասին հյուսված այս փոքրիկ և սրտառուչ ավանդությունը:

Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ



# ԲՈԼՈՐԸ ԳԻՏԵՆ

Դմբո Նիքը ապրում էր Անգլիայում: Նա խոսում էր անգլերեն, բայց գրել-կարդալ չգիտեր:

Մի օր Նիքը գնում է մի ուսուցչի մոտ և խնդրում, որ իրեն գրել-կարդալ սովորեցնի: Ուսուցիչը համաձայնում է, և սկսում են առաջին դասը: Նա վերցնում է մատիտը և տետրում գրում՝ Ա, Բ, Գ, Դ:

— Սա Ա է,— ասում է ուսուցիչը և ցույց տալիս «Ա» տառը:

— Ի՞նչ գիտենք, որ Ա է.— հարցնում է աշակերտը:

— Սա Ա է, իսկ սա՝ Բ.— շարունակում է ուսուցիչը:

— Բայց ի՞նչ գիտենք, որ դա Բ է և ոչ թե Ա,— դարձյալ հարցնում է դմբո Նիքը:



Ուսուցիչը չի պատասխանում այդ հարցին: Նա ձեռքը մոտեցնում է Նիքի ականջին և քաշում:

— Վա՜յ, ականջս, ականջս,— բացականչում է Նիքը:

Ուսուցիչը նորից է քաշում ականջը:

— Իսկ ես ի՞նչ գիտեմ, որ սա ականջ է.— հարցնում է ուսուցիչը.— ի՞նչ գիտեմ:

— Ականջ է, էլի՜.— պատասխանում է դմբո Նիքը.— բոլորը գիտեն, որ դա ականջ է:

— Ճիշտ այդպես էլ բոլորը գիտեն, որ սա «Ա» է, իսկ սա՝ «Բ».— ասում է ուսուցիչը և շարունակում դասը:

*Անգլերենից թարգմ. Կ. ՍԱՐՎԱԶՅԱՆ*

*— Ռուբիկ, դու մեկ հատ տանձ ունեիր, մեկն էլ մայրիկը տվեց, քանի՞սը եղավ:*

*— Երկու հատ:*

*— Իսկ եթե մեկն էլ պապիկը տա, ի՞նչ կլինի...*

*— Շատ լավ կլինի...*

*Լալայի ձեռքը դիպավ պատին և ցուցամատի հողի վրա մի փոքր քերծվածք առաջացավ: Նա լացակումած մոտեցավ մորը և ասաց.*

*Մայրիկ, մատիս ծունկը ցավեց...*

ԱՆ. ՔԱՆՔԱՆՅԱՆ



*Մի խումբ տղաներ դպրոցի բակում, աշխույժ-աշխույժ խոսելով, ինչ-որ ռեբուս էին լուծում: Միայն Կարոն էր, որ մոտ չէր գնում նրանց և մի լանջի կտոր գցած ոտների առաջ, «ֆուտբոլ» էր խաղում:*

*— Կարո, ինչու՞ դու էլ չես գնում տղաների մոտ, որ ուղեղդ շարժես,— ասաց ջոկատավարը:*

*— Ես առանց նրանց մոտ գնալու էլ կարող եմ ուղեղս շարժել,— ասաց Կարոն, գլուխը վեր ու վար, աջ ու ձախ տարուբերելով:*

*— Ես քեզ ասում եմ ուղեղդ շարժիր, իսկ դու գլուխդ ես շարժում,— ծիծաղեց ջոկատավարը:*

*— Դե ուղեղս էլ գլխիս հետ շարժվում է, էլի,— պատասխանեց Կարոն:*

*ԳՐԻԳՈՐ ՀԱԿՈԲՅԱՆ*

*Մայրիկ, այսօր ֆիզկուլտուրայից «հինգ» ստացա,— ուրախ-ուրախ ասաց Հրանտիկը:*

*— Ապրես, բալիկս, տեսնեմ օրագիրդ:*

*— Իսկ դու հայրիկին չե՞ս ասի, որ մայրենի լեզվից ու թվաբանությունից «երկուս» եմ ստացել:*



*— Արամ, քեզ չի կարելի հեռուստացույցով նայել այսօրվա կինոնկարը,— ասաց հայրը:*

*— Հապա Արմենի՞ն:*

*— Նա դեռ փոքր է:*

*— Ո՛չ, ո՛չ, ազնիվ խոսք, նա էլ է արդեն ծխում:*

ՌԱՖԱՅԵԼ ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ

Նկ. ԷԴՎԱՐԴ ԶԱՔԱՐՅԱՆԻ



# ԱՄԵՆԱԻՄԱՍՏՈՒՆ ԱՔԱՂԱՂԸ

ԽԱՉԻԿ ՀՐԱՉՅԱՆ

Կար-չկար մի աքաղաղ կար: Ինչ աքաղաղ. շքահանդեսի համար զուգված գեներալ: Մեծ-մեծ խթաններ ուներ նա, կարմիր-կարմիր կատար, ասես շառունակ խմած լիներ: Շատ իմաստուն աքաղաղ էր, աշխարհի ամենաիմաստուն աքաղաղը: Հավերն ու բոլոր մյուս թևավորները ակնածում էին նրանից, այնքան որ խելոք-խելոք բաներ էր ասում:

Այդ աքաղաղի ամենասիրած խոսքն այս էր «Թե որ ես չլինեմ...»

— Թե որ ես չլինեմ,— ասում էր,— ուրուրները բոլորիդ կփախցնեն, կուտեն:

Այս խոսքից հավերը կծկվում էին, հավաքվում իրար գլխի, մյուսները՝ նույնպես: Հանաք բան չի ուրուրներին կեր դառնալը:

— Թե որ ես չլինեմ,— ասում էր,— Քոթոթը բոլորիդ բմբլահան կանի:

Այդ ճիշտ է: Քոթոթը կարծես հենց նրա համար է ստեղծված, որ անակնկալ վրա ընկնի ու սրա-նրա բմբուլները քամուն տա:

— Թե որ ես չլինեմ,— ասում էր,— լույսը չի բացվի...

Այդ արդեն սարսափելի է: Պատկերացրեք, հանկարծ ու միշտ գիշեր լինի, մո՜ւթ-մո՜ւթ... Ինչպե՞ս պիտի գտնես անդրավարտիքդ ու գուլպաներդ: Այո, դրա մասին մտածելն իսկ սարսափելի է: Դե, հավերն էլ մտածեցին այլևս չմտածել: Այդպես և՛ հանգիստ էր, և՛ առանց գլխացավանքի:

Եվ կա՜ր-չկա՜ր մի աղվես կար: Այդ աղվեսը հաշիվ ուներ ամենաիմաստուն աքաղաղի հետ: Կհարցնեք՝ ի՞նչ հաշիվ: Ասեմ: Ինչպես գիտեք, աղվեսները սիրում են հավ ուտել (ո՞վ չի սիրում որ...), իսկ այդ աքաղաղը շատ վնասակար արարած էր (աղվեսի տեսակետից). ձենը գլուխն էր գցում, արար-աշխարհ լեղապատառ վեր թռցնում տեղից: Դե, հայտնի բան է, աղվեսի համար իսկի էլ ցանկալի չի, որ մարդիկ խոր քնից արթնանան. ախր, նրանք էլ մի բարի պտուղ չեն... Մեկ էլ տեսար՝ ճանկեցին իրեն ու մորթին հանեցին, որ հետո գցեն կանանց վիզը: Ի՜նչ մի երևելի բան է դա, չես հասկանում... Ուղղակի նույնիսկ ծիծաղելի է, և աղվեսը քահ-քահ կծիծաղեր, իհարկե, եթե դա իր քրոջ մորթին չլիներ... Մի խոսքով, այ թե աղվեսն ինչ հաշիվ ուներ աքաղաղի հետ: Դե, իսկ քանի որ հաշիվ ուներ, որոշեց մաքրել:

Մի գիշեր աղվեսը սուսիկ-փուսիկ մտավ հավանոց ու փափուկ-փափուկ թռավ վերի թառին. նա գիտեր, որ աքաղաղը միշտ վերի թառին է լինում: Թառը շարժվեց ոտքի տակ... աքաղաղն աչքերը բացեց ու ի՜նչ տեսնի. առջևը պուպո՛ւստ, տնկվել է աղվեսը և շրթունքներն է լիզում: «Հոգիդ տո՛ւր»: Աքաղաղը կտուցը բացեց, հայտնի չէ՝ ծուղրուղո՞ւ կանչելու, իր սովորական «թե որ ես չլինեմ» խո՞սքը կրկնելու, թե՞ աղվեսից բացատրություն պահանջելու՝ անակնկալ այցելության համար... Բայց աղվեսը բռնեց նրա կոկորդից ու ցած թռավ: Թառը, շը՛խկ, հավերի գլխին... Կչկչոց բարձրացավ, ծղրտյուն: Ի՞նչ է պատահել... Ի՞նչ է պատահել: Աքաղաղը չկա: Աքաղաղը չկա՞: Ինչպե՞ս թե: Աքաղա՞ղը... Աքաղա՛ղը... Ամենաիմաստուն աքաղաղը... Չկա՛... Չի՛ կարող պատահել: Հապա ինչպե՞ս կլինի աշխարհի բանը: Իսկ լույսը, լույսը... Լույսը չի բացվի: Աքաղաղը չկա, լույսը չի բացվի... Ուրեմն, միշտ գիշեր պիտի լինի, մո՜ւթ-մո՜ւթ... Եվ գուլպաներդ ու անդրավարտիքդ էլ գտնել չես կարող...



— Իսկի էլ գիշեր չի լինի,— հանկարծ լսվեց մի բարակ ձայն, դա, անշուշտ, վառեկն էր:— Այո՛, իսկի էլ գիշեր չի լինի, և նա էլ

*իսկի իմաստուն աքաղաղ չէր, այլ սովորական մի աքլոր...*

*Դե, ի՛նչ ասես այդ վառեկին. մի մատ չկա, ամենաիմաստուն աքաղաղին է քննադատում: Աքլո՛ր... Այ քեզ սերու՛նդ...*

*Եվ ինչ եք կարծում, այդ մի մատ վառեկը ճիշտ դուրս եկավ, այո՛: Լույսը բացվեց, բացվեց այնպես, ասես իսկի գիշեր չէր էլ եղել: Ասենք, այստեղ ոչ մի զարմանալի բան չկա. միշտ էլ այդպես է լինում՝ գիշերին հաջորդում է ցերեկը: Այնպես որ հանգիստ կարող եք հագնել շորներդ, թեյել ու գնալ ձեր բանին:*

*Նկ. ԱՐՄԻՆԵ ԳԱԼԵՆՑԻ*

# ԲՈՍՏԱՆ ՊԱՀՈՂ ԷՇԸ

*ՄՆԱՑԱԿԱՆ ԹԱՐՅԱՆ*

Քեռի Սահակն էշին կանչեց
Ու պատվիրեց.
— Երկու ժամով գյուղ եմ գնում,
Բոստան պահող դու ես մնում.
Նոր է ջրված. ներս չմտնեն,
Թե չէ տակնուվրա կանեն։

Մեկ էլ մի ծիտ թռավ եկավ,
Ձմերուկի մարգը մտավ։
— Ա՛յ հիմար ծիտ, ա՛յ անպիտան,
Ո՞վ թույլ տվեց մտնես բոստան։
— Զուր ես այդպես դու բարկանում,
Երբեք վատ բան ես չեմ անում,
Այլ՝ ուտում եմ որդ ու թրթուր,
Ում որ կուզես գնա հարց տուր...
— Դո՛ւրս գնա, չե՛ս կարող խաբել,
Իզուր չեն ինձ պահակ կարգել,—
Եվ էշն ուզեց բռնել ծտին,
Ծիտը թռավ կանգնեց թմբին։
Էշը զռաց, տրտինգ տվեց,
Ճնչակտուր մոտիկ վազեց...
Ծիտը նորից թռավ թեթև,
Մտավ մի մեծ կոշտի հետև...

Այսպես թռան հա վար ու վեր,
Տրորելով թաղ ու թմբեր։
Մեկ էլ եկավ ծեր բոստանչին,
Տեսավ ասաց.— Վա՛յ քո խղճին,
Ա՛յ ավանակ, ի՞նչ ես արել,
Ողջ բոստանն ես դու ավերել...
Իսկ ծիտը թե՝
— Մեղքը քոնն է, քեռի Սահակ։
Ո՞վ է տեսել էշից պահակ։

# ԱՅԾՆ ՈՒ ԿԱՅԾԸ

*ՀԱՅԿԱԶ ՄԵԼՅԱՆ*

Անհանգիստ ու անմիտ այծը
Խաղալիք էր կարծում կայծը։
Վազվզում էր շուրջը անվերջ,
Որ կայծ որսա նա ծխի մեջ։
Խրատում էր հովիվը միշտ.
— Խելոք մնա, ա՛յ անբարիշտ,
Կկործանի քեզ այդ խաղը,
Հրդեհ կտաս ամբողջ թաղը։
Այծը ճոճեց եղջյուրները,
Ասաց.— Ես եմ գլխիս տերը։
Տե՛ս միրուքս, արդեն ծեր եմ,
Ուրեմն մեծ խելքի տեր եմ։—
Երբ որ իջավ մթնշաղը,
Վերսկսեց այծն իր խաղը.
Մեկ վեր եթավ և մեկ էլ՝ ցած
Կրակի մեջ ընկավ հանկարծ։
Լսվեց այծի լացն ու կոծը։
— Սեռա՛, մարե՛ք մեջքիս բոցը...—
Ու սարսափից արագ-արագ
Այծը փախավ բակից մարագ,
Բոցավառվեց մեջքի կայծը,
Մարագն այրվեց, հետն էլ՝ այծը։




# ԵՐԵՔ ՈՒՐԱԽ ԳՈՒՅՆԵՐ

ՅՈՒ. ՍՄՈԼՆԻԿՈՎ

## ԹԵ ԻՆՉՈՒ ՆԱԽԱՐԱՐԱՊԵՏ ՍԱՏԿԱԾԸ ԱՐԺԱՆԱՑԱՎ ԵՎՍ ԵՐԵՔ ՇՔԱՆՇԱՆԻ

Արքան և ոստիկանապետ Գրոտնակը ընթրում էին. սև սուրճ էին խմում գորշ հացի հետ։ Հանկարծ, դուռն առանց թակելու, սենյակ մտավ սարսափից ավելի գորշացած նախարարապետ Սատկածը։ Թագավորն ու Գրոտնակը իսկույն հասկացան, թե ինչ է պատահել։

— Ի՞նչ, Քը-քը-քրոմը, Կը-կը—Կոբալտը, Ո-ո-Որդա՞նը,—կակազելով հարցրեց Սևագույնը։

Նախարարապետը գլխով արեց և թուլացած նստեց հատակին։

— Շղթայել հանցագործներին,—աղաղակեց արքան։

— Պարան չկա, ձե՛րդ մեծություն։

— Ի՞նչ անել, ի՞նչ անել,—ատամները կրճտացրեց Սևագույն Առաջինը։

— Ահա ինչ,—ասաց նախարարապետը,—ես հիմա կգնամ վարպետ Սոսնձի մոտ և կհրամայեմ այդ ավազակների համար պարան հյուսել։ Ամենաամուրն ու ամենաերկարը։

— Հիանալի է, Սատկած։ Եվս երեք շքանշան եմ պարգևում քեզ։ Դե շո՛ւտ, գնա՛ ծեր Սոսնձի մոտ,—ուրախացավ արքան։

— Ձե՛րդ անգունություն, իսկ ինչի՞ց պիտի հյուսեմ պարանը։ Դրա համար թել է հարկավոր, իսկ ես թել չունեմ,—Սատկածին պատասխանեց վարպետ Սոսինձը։

— Լա՜վ, որ այդպես է, ժանեկավոր օձիքս ու թևանիքներս քանդիր...—հառաչեց նախարարապետը,—պետական գործ է...

Նախարարապետը նստեց, իսկ զինվորներին հրամայեց մի շնչով վազել և Գրոտնակին հայտնել, որ պարանը շուտով կլինի։

— Թո՛ղ ժամանակ չկորցնի, թո՛ղ իր զորաբաժնով դուրս գա և չարագործներին բռնի։

Զինվորները սլացան, բայց կամուրջից հեռու չվազեցին։ Նրանց ոտքերը իսկույն կպան սոսնձին։ Զինվորները սկսեցին ոտքերը ձեռքերով ազատել, բայց ձեռքերն էլ սոսնձվեցին։ Նրանք վերջնականորեն կպան ու քնեցին...

Իսկ վարպետը իր կախարդական կացինը մի կողմ դրած, սկսեց նախարարապետի օձիքը քանդել։ Բայց ամուր թելը կարծես պատահմամբ ընկավ Սատկածի ուսովը, խճճեց ոտքերը, հետո ձեռքերը, և նախարարապետը չէր հասցրել աչք թարթել, երբ ոտ ու ձեռքով փաթաթվեց։ Սատկածը աչքերը կատաղի չռած՝ սկսեց գոռալ, բայց իզուր էր։

— Երկնագույնի՛կ, վազի՛ր Որդանի մոտ,—պատվիրեց վարպետ Սոսինձը,—ասա, որ Սատկածը գերի է։

## ԿԱՏԱՂԻ ՃԱԿԱՏԱՄԱՐՏԻ, ՀԱՄԱՐՁԱԿ ՇԵԿԼԻԿԻ ԵՎ ՎԵՐԱԾՆՎԱԾ ԱՐԵՎԻ ՄԱՍԻՆ

— Բռնի՛ր, ճզմի՛ր, խեղդի՛ր,—ոստիկանապետ Գրոտնակը առաջինը հարձակվեց երեք ընկերների վրա։



Կոբալտը համարձակ քայլեց դեպի ոստիկանապետը, վերցրեց իր արճիճե գլխարկը... և հենց այդ պահին կապույտ ներկի կուրացնող հոսանքը գետնով արեց Գրոտնակին։ Որդանն ու Քրոմն էլ չվրիպեցին։

Սկիզբը՝ նախորդ համարում

Զինվորները վառվռուն շիշերից աչքները կկոցեցին, իսկ երբ բացեցին՝ սարսափելի բան տեսան։ Դրոշակը կատաղությունից պայթեց։

Թագավորի զորքը մնաց առանց հրամանատարի։ Այդ պահին մի կառք մտավ հրապարակ։

— Նախարարապե՜տը, նախարարապե՜տը,— աղմկեցին գործերը։—Նա պարան է բերում։ Կեցցե՛։ Համայրում։

Հրապարակ ժամանեց ինքը Սևագույնը։ Նա կոշիկի առեղի խոզանակներ էր թափահարում, որոնցից թանձր, սև ներկ էր հոսում։

— Հառա՛ջ, զա՛րկ խայտաբղետներին,—խռպոտած ձայնով հրամայեց արքան և հարձակվեց Որդանի վրա։ Բայց ճարպիկ Մանուշը գլորվեց Սևագույնի ոտքերի տակ. Արքան սայթաքեց, ձեռքից գցեց խոզանակները և թրմփաց հրապարակի մեջտեղում։



Իսկ կառքը հանկարծ շուռ եկավ և շարժվեց զինվորների վրա, շպրտելով նրանց դես ու դեն։ Արքան և զինվորները չէին հասցրել ուշքի գալ, երբ քաղաքի վրայի ցանցը ձգող պարանին հայտնվեց Ճեկլիկը։ Նրա ձեռքում փայլեց վարպետ Սոսնձի կացինը, և… ցանցը աղմուկով իջավ ներքև։ Թագավորն ու իր ամբողջ գործազորը խճճվեցին։ Նրանք թպրտում էին ցանցի մեջ և ավելի ու ավելի խճճվում։ Նրանց աչքերից գորշ արցունք էր թափվում։ Հրապարակը խռնավացավ և կեղտոտվեց։

Այդ ժամանակ քաղաք էին մտնում մնացած գույները։ Հրապարակը վառ գոտիներից, գլխարկներից ու վրձիններից ծաղկեց պարտեզի նման։

— Նախարարապետի՜ն բռնե՛ք,—գոչեց Քրոմը։

Դեղին, նարնջագույն և մանուշակագույն ներկերը նետվեցին դեպի կառքը։ Դռները բացվեցին, և… կառքից դուրս եկավ ժպտացող Երկնագույնիկը։

— Բարեկամնե՛ր,—ասաց նա,—Թագավորական նախարարապետը կապված է, գտնվում է վարպետ Սոսնձի մոտ։ Ժամանակ չկորցնենք, հարկավոր է մեր երկիրը կարգի բերել։ Ես սկսում եմ աշխատել։—Եվ Երկնագույնիկն սկսեց երկնագույն ներկով ծածկել սև երկինքը։ Ամեն ինչ միանգամից փայլեց, արևի ոսկին բռնկվեց, թռչունները երգեցին։

— Կեցցե՛ Երկնագույնիկը,—գոչեցին ներկերը։

— Անցնենք աշխատանքի։

## ՄԵԾ ԱՆԽԱՏԱՆՔԻ ԵՎ ԵՐԵՔ ՈՒՐԱԽ ԳՈՒՅՆԵՐԻ ՄԻ ՔԱՆԻ ՆԱԽԱՐԴԱԿԱՆ ԳԱՂՏՆԻՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Չեք կարող պատկերացնել, թե Սևագույնը որքան չարիք էր գործել։ Այժմ մեր ներկերն ամեն ինչ պետք է նորից ներկեին. ծառերը, գետերը, ծաղիկները, թռչուններն ու գազանները։

Կանաչ գույները աշխատանք շատ ունեին։ Նրանք ուժասպառ էին եղել։ Չէ՞ որ պետք էր ներկել խոտը, բոլոր ծառերը, յուրաքանչյուր տերև, յուրաքանչյուր ցողուն և նույնիսկ թրթուրներին, որոնք դեռ գորշ էին։

Որդանը, Քրոմը և Կոբալտը, որ ղեկավարում էին այդ աշխատանքները, այնքան ներկ էին պատրաստում, որ վարպետ Սոսինձը չէր հասցնում սրվակները լցնել։ Նոր սրվակները դեռ ջահել էին և չգիտեին, թե ինչպես պետք է ներկել։ Այդ պատճառով էլ անհավատալի թյուրիմացություններ էին ծագում։

— Ի՞նչ եք անում,—գոչեց Քրոմը, մանուշակագույնով ներկած նարինջները տեսնելով։

— Վա՜յ, վա՜յ, վա՜յ,—գլուխը բռնեց Կոբալտը,—ո՞վ է եղևնին նարնջագույն ներկել։

Այդ պահին կիսաներկ անտառից դուրս եկավ մի կանաչ վագր։ Նա նեղացած լալիս էր։ Նրա

հետևից կատաղած քայլում էր աղյուսի նման մի կարմիր փիղ։

— Սա խայտառակություն է,—ասում էին Թանաքի շշերի նման մանիշակագույն ընձուղտները...

— Իսկապես որ խայտառակություն է,—գլուխը քորեց Որդանը։

— Հապա՛, տղաներ։ գնացեք Թիթեռ ու Թըռչուն ներկելու։

— Պատանի սրվակները հարձակվեցին թիթեռների վրա և յուրաքանչյուրը ներկեց իր ուզածի պես։

Հետո փոքրիկները մի մեծ Թռչուն տեսան, որ տխուր նստել էր տաղտկալի գորշ ծառին և չներկված որդեր էր ուտում։

— Հապա, մե՛կ-երկո՛ւ, սկսեցի՞նք։

Եվ բոլոր ներկերը միանգամից բացեցին իրենց վրձինները։ Այդ Թռչունը սիրամարգն էր։ Նա աշխարհի ամենաշքեղ ու ամենախայտաբղետ Թռչունը դարձավ։

Այնտեղ, որտեղ աշխատում էին նոր ներկերը, մինչև ուշ գիշեր լսվում էր նրանց ծիծաղը, աղաղակները և ուրախ աղմուկը։

Գործն ընթանում էր արագ։ Բայց ահա Մանուշը եկավ՝ հայտնեց, որ զանգակածաղիկների համար մանիշակագույն ներկը չի բավականացնում։

Որդանն ու Կոբալտը իրենց ներկերն անմիջապես ցողեցին ծաղիկների վրա, և մանիշակագույն զանգակածաղիկները ավելի վառ դարձան։

Իսկ այդ ժամանակ զինվորները սև ցանցի միջից նայում էին Մեծ աշխատանքին և զարմանում երեք գլխավոր գույների վարպետության վրա։



## ԵՐԿՆԱԳՈՒՅՆԻԿՆ ՈՒ ԱՐՔԱ ՍԵՎԱԳՈՒՅՆ ԱՌԱՋԻՆԸ

Արքա Սևագույնը աշխատում էր զարդարված քաղաքի կողմը չնայել։ Նա մատները քսում էր կոշիկին և մրթմրթում։

— Ես ձեզ ցո՛ւյց կտամ, դուք դեռ կտուժեք։ Այնպիսի զվարճալիք սարքեմ ձեր գլխին, խայտաբղետ Թափթփուկներ։

Կես ժամ չէր անցել, երբ Շեկլիկն ու Կանաչը կառքով բերեցին կապկպված Նախարարապետին։ Երբ Սատկածը արքա Սևագույն Առաջինին տեսավ ցանցի մեջ նստած, վատ զգաց։ Վերջին անգամ հառաչեց ու մեռավ։ Նրա բերանից մժեղներ դուրս թռան և վախեցած սարդեր դուրս սողացին...

— Նախարարապետին օգտագործել որպես ջարդոն,—հրամայեց Ճերմակը,—իսկ Թագավորին ի՞նչ անենք։

— Կորչի՛ Սևագույնը։

— Թող կորչի՛ մեր երկրից,—գոռում էին ներկերը։

— Ո՛չ, սկզբում աշտարակից մեր հիանալի երկիրը ցույց տանք։ Թո՛ղ տեսնի մեր աշխատանքը։ Թո՛ղ իմանա, որ սև ուժերը մեզ համար սարսափելի չեն։

Թագավորին դուրս քաշեցին սև ցանցից և տարան աշտարակի վրա։ Բայց վերևում Սևագույնը հանկարծ դուրս պրծավ ու պարանե աստիճանով բարձրացավ դեպի Օդապարիկը։

— Բռնե՛ք դրան, բռնե՛ք,—գոռում էին հրապարակից,—իր կեղտոտ կոշկաներկով ուզում է երկինքը նորից ապականել։

Եվ այն պահին, երբ Սևագույնը պատրաստվում էր երկինքը սև ներկով ցողել, Երկնագույնիկը ոսկե կացնով հարվածեց և կտրեց պարանե աստիճանը։

Օդապարիկը երկինք բարձրացավ՝ իր հետ տա-

ծխով պարանից կառչած Մեծագույնին։ Քիչ անց չարաբաստիկ աթոռն ու կեռը փլվեցին։ Երկնագույնիկը փրփրոտ հարվածից այդ սև լարային, և նա ընդմիշտ անհետացավ։

Հիմա դու կհարցնես, թե ո՞վ է կոշիկ մաքրում, ո՞վ է վագրի վրա սև շերտեր նկարում կամ ճաղարքը սև ներկում. Բնական, մյուս սև ներկերը, որոնք աշխատանքից չեն զզվում։ Նրանք էլ մյուս ներկերի նման աշխատավորներ են, նրանք միշտ զբաղված են, իսկ աշխատող սևակը մտադրություն չի ունենա տխմար թագավոր դառնալ։

### ԵՐԵՔ ՈՒՐԱԽ ԳՈՒՅՆԵՐԻ ԱՇՏԱՐԱԿԻ ՄԱՍԻՆ

Մեծ Աշխատանքը շարունակվում էր։ Իմաստուն ճերմակը Որդանի հետ վերջալույսի համար հիանալի վարդագույն պատրաստեց։ Կամ Կոբալտի հետ ներկում էր ծովերը, գետերը, լճերը, օգնում էր իր աղջկան՝ Երկնագույնիկին։ Ճերմակն էր, որ երկնքի վրա սպիտակ, փափուկ ամպեր նկարեց, իսկ ձմեռվա համար սպիտակ փայլուն գորգ պատրաստեց։

Բոլոր ներկերն էլ գործ ունեին։ Գորշ զինվորներին նույնիսկ վստահեցին մկներին ներկել, հետո նապաստակներին։ Գորշերի մոտ ներկվելու եկան նաև փղերը, գետաձիերը, կատուները... Ճիշտ է, մի քանի կատու ցանկացան սև մնալ, բայց դա իրենց գործն է։

Որդանը, Կոբալտը և Քրոմը հատուկ դպրոցում, պատանի ներկերին գեղեցկության գիտությունն էին ուսուցանում։

Մի անգամ, երբ հրապարակում շատ ներկեր կային, Երկնագույնիկը, որ հերթապահում էր իր աշտարակի վրա, դարձավ խայտաբղետ ժողովրդին.

Բարեկամնե՛ր, եկեք ներկենք այս մռայլ աշտարակը։

— Ճիշտ է,—դանդաղորեն ասաց Մոխիրը,— դեղինը ներկենք—վարպետ Քրոմի պատվին, կարմիրը՝ վարպետ Որդանի պատվին, իսկ կապույտը՝ վարպետ Կոբալտի պատվին և անվանենք Երեք Ուրախ Գույների Աշտարակ։

Հուժկու «կեցցեն» տարածվեց հրապարակով մեկ։

— Թող երկրի վրա արե՛ը բոլորին լուսավորի,— ասաց ուրախ Քրոմը և ներկեց աշտարակի ծայրը։

— Թող աշխարհի վրա միշտ լինի խաղաղ, կապույտ երկինքը,—ասաց հանդարտ Կոբալտը և մի շերտ քսեց աշտարակին։

— Թող երկրի տերը լինի աշխատանքը, որը գեղեցկություն է ստեղծում,—ասաց համարձակ Որդանը և աշտարակի հիմքը հուրհրան կարմիրով ներկեց։

Այդ օրվանից բազմագույն ժողովրդի երկրում եռագույն աշտարակն է կանգնած։ Տոներին աշտարակից ամենավառ ծաղիկների փնջեր և զունավոր կոնֆետներ են թափվում։ Պարսպի ատամներին Կանաչը արդեն անախայ գրել է.

## Կեցցե՛ աշխատանքը եվ գեղեցկությունը

Այդ երկրում այլևս չար թագավորներ և մռայլ նախարարներ չեն հայտնվում։

Երեք Ուրախ Գույների վառ Աշտարակը, երկընքով մեկ ծիածան է փռել։

Թող դա ձեզ միշտ հիշեցնի Երեք Ուրախ Գույները, որոնք ապրում են հավերժ և մարդկանց մեծ երջանկություն բերում. գեղեցիկի երջանկությունը։

Ռուսերենից թարգմանեց
ԱԼԵՔՍԱՆԴՐ ԹՈՓՉՅԱՆԸ






Ժամանակին ապրում էր մի կին, որը ոչ մի երեխա չուներ, և այդ պատճառով շատ տխուր էր անցնում նրա կյանքը։ Եվ ահա մի օր նա դիմում է արևին.

— Սիրելի Արեգակ, խնդրում եմ ինձ մի աղջիկ նվիրես։ Երբ նա տասներկու տարեկան դառնա, ես նրան քեզ կվերադարձնեմ։

Արեգակը կատարում է նրա ցանկությունը և նվիրում մի աղջիկ։ Կինը նրան անվանում է Լեթիկո և մեծացնում մեծ սիրով։

Երբ Լեթիկոն տասներկու տարեկան էր, մի օր գնում է անտառ կաղամբ փնտրելու։ Մի լուսավոր բացատում նրան հանդիպում է Արեգակը և ասում.

— Լեթիկո, երբ տուն գնաս, մայրիկիդ ասա, որ տված խոստումը պետք է կատարել։

Լեթիկոն գնում է տուն և ամեն ինչ պատմում մորը։ Կինը շատ է վախենում։ Նա անմիջապես փակում է տան դուռն ու պատուհանը, ծեփում բոլոր ճեղքերն ու անցքերը, որպեսզի Արեգակը չկարողանա տանել Լեթիկոյին։ Բայց կինը մոռացել էր փակել բանալու անցքը։ Արևի մի շողք սողում է այդ անցքի միջով, բռնում աղջկան և դուրս բերում տանից։

Այժմ Լեթիկոն ապրում էր հրաշալի Արեգակի մոտ։ Սակայն առավոտից մինչև ուշ երեկո նա մտածում էր իր սիրելի մայրիկի մասին։

Մի անգամ Լեթիկոն գնում է ծղոտ բերելու։ Նա նստում է ծղոտի կապոցի վրա և սկսում տրտնջալ։ «Ինչպես որ այս ծղոտն է իմ ոտքերի տակ հառաչում, այնպես էլ իմ սիրտն է հառաչում մայրիկիս կարոտից»։ Մտքերով տարված նա մոռանում է ժամանակը և այնքան երկար է մնում, որ երբ վերադառնում է, Արեգակը հարցնում է.

— Լեթիկո, որտե՞ղ էիր այսքան ժամանակ։

— Կոշիկներս այնքան մեծ են, որ չէի կարող ավելի արագ քայլել։

Եվ Արեգակը կարճացնում է նրա կոշիկները։

Մի ուրիշ անգամ Արեգակը Լեթիկոյին ուղարկում է ջուր բերելու։ Սակայն հենց որ նա առվակի մոտ է հասնում, նստում է ու սկսում տրտընջալ. «Ինչպես որ այս ջուրն է հոսում, այնպես էլ իմ սիրտն է հոսում մայրիկիս կարոտից»։ Նա նորից այնքան երկար է մնում առվակի ափին, որ Արեգակը նորից հարցնում է.



— Ա՛յ Լեթիկո, ինչո՞ւ այսքան երկար մնացիր։

— Հագածս շորն այնքան երկար է, որ չի թողնում ավելի արագ քայլեմ։

— Եվ Արեգակը կարճացնում է նրա զգեստը։

Մյուս անգամ Լեթիկոն գնում է քաղաք՝ կոշիկ-








ներ գնելու: Կոշիկը ձեռքն է վերցնում և սկսում տրտնջալ. «Ինչպես որ այս կոշիկն է ճռճռթում, այնպես էլ իմ սիրտն է ճռճռթում մայրիկիս կարոտից»: Երբ նա տուն է գալիս, Արեգակը հարցնում է.

— Ա՛յ Լեթիկո, ինչու՞ ես այսքան ուշ գալիս:

— Գլխարկս այնքան լայն է, որ աչքերիս էր ընկնում, դրա համար չէի կարողանում ավելի արագ քայլել:

Եվ Արեգակը նրա գլխարկը ավելի է նեղացնում:

Սակայն վերջապես Արեգակը նկատում է, որ Լեթիկոն տխուր է: Եվ երբ աղջիկը նորից է դուրս գնում ծղոտ բերելու, Արեգակը հետևում է նրան և լսում նրա բողոքը: Այդ ժամանակ Արեգակը տուն է գալիս, կանչում երկու աղվեսի ու հարցնում

— Ուզու՞մ եք Լեթիկոյին տուն տանել:

— Ինչու՞ չէ:

— Բայց ինչ եք ուտելու և խմելու, եթե ճանապարհին սովածանաք ու ծարավեք:

— Այն ժամանակ մենք նրա մսից կուտենք և նրա արյունից կխմենք:

— Դուք պիտանի չեք այս առաջադրանքի համար,— ասում է Արեգակը, վռնդում նրանց և կանչում է երկու նապաստակի:

— Ուզու՞մ եք Լեթիկոյին իր մոր մոտ տանել:

— Դե, ինչու՞ չէ:

— Բայց ի՞նչ եք ուտելու և խմելու, եթե ճանապարհին սովածանաք ու ծարավեք:

— Մենք խոտ կուտենք և ջինջ աղբյուրներից ջուր կխմենք:

— Ուրեմն վերցրեք նրան և տարեք տուն:

Եվ ահա նապաստակները Լեթիկոյի հետ ճամփա են ընկնում: Սակայն մայրիկի տունը հեռու էր: Որոշ ժամանակ գնալուց հետո, նապաստակները սովածանում են և ասում աղջկան.

— Բարձրացի՛ր այն ծառը, սիրելի՛ Լեթիկո, և մնա վերևում, մինչև մենք կշտանանք:

Աղջիկը նոր էր բարձրացել ծառը, երբ վազելով գալիս է մի չար կախարդ և ասում.

— Լեթիկո՛, գեղեցի՛կ Լեթիկո, իջիր ներքև և տես, թե ի՛նչ հիանալի կոշիկներ ունեմ:

— Օ՛, իմ կոշիկներն ավելի գեղեցիկ են:

— Ես շտապում եմ, ցա՛ծ իջիր, քանի դեռ տունս շուռ չեմ տվել:

— Դե ուրեմն գնա շու՛ռ տուր տունդ և նորից արի:



Կախարդ պառավը գնում է, շուռ տալիս իր տունը և նորից գալիս է ու կանչում.

— Լեթիկո՛, գեղեցի՛կ Լեթիկո, արի՛ ներքև և տես, թե ի՛նչ գեղեցիկ գոգնոց ունեմ:

— Օ՛, իմ գոգնոցն ավելի գեղեցիկ է:

— Եթե դու ցած չիջնես, ես ծառը կտապալեմ գետնին և քեզ կուտեմ:

Կախարդը բաձրացնում է ծառը, բայց տեսնելով, որ ոչ մի կերպ չի կարողանում այն շուռ տալ, ասում է.

— Լեթիկո՛, գեղեցի՛կ Լեթիկո, արի ներքև, ախր ես պետք է իմ երեխաներին ջուր տամ:

— Որ այդպես է, գնա նրանց ջուր տուր՝ հետո արի:

Կախարդը հեռանում է, իսկ Լեթիկոն կանչում է.

— Նապաստակնե՛ր, նապաստակնե՛ր...









— Լսի՛ր, մեր Լեթիկոն է կանչում,— ասում է մի նապաստակը մյուսին, և երկուսով վազում են Լեթիկոյի մոտ:



Լեթիկոն ծառից իջնում է, և նրանք շարունակում են ճանապարհը: Սակայն կախարդը վազում է նրանց հետևից:

— Ոչ մեկին այստեղով անցնելիս չե՞ք տեսել,— հարցնում է նա դաշտում աշխատող մարդկանց:

— Մենք լոբի ենք տնկում,— պատասխանում են գյուղացիները:

— Է՜, ի՞նչ եք ասում: Ես չեմ հարցնում, թե դուք ինչ եք անում, այլ ասում եմ՝ ոչ մեկին այստեղով անցնելիս չե՞ք տեսել:

— Խու՞լ ես, ի՞նչ է, լոբի, լոբի. լոբի ենք տընկում,—ասում են գյուղացիները և այդպես ստիպում, որ կախարդն ուշանա:

Աղջիկն ու նապաստակները վազում են ու վազում: Արդեն հեռվից Լեթիկոն նկատում է իր սիրելի մոր տունը: Եվ շունը, որ առաջինն է նկատում նրան, հաչում է:

— Հա՛ֆ, հա՛ֆ, մեր Լեթիկոն գալիս է, գալի՜ս:

— Ջայնդ կտրի՛ր,—տխուր ասում է մայրը,— ուզում ես որ ես վշտից մահանա՞մ:

— Ծուղրուղու՜,—հիմա էլ կանչում է աքաղաղը:

— Այդ նա է, մեր Լեթիկոն է գալիս:

— Ջայնդ կտրի՛ր, ուզում ես, որ վշտից մահանա՞մ,—ասում է մայրը և լաց լինում:

Բայց հենց այդ ժամանակ Լեթիկոն ու նապաստակները տուն են հասնում: Երբ երկրորդ նապաստակը տան դռնից ներս է ընկնում, կախարդը բռնում է նրա պոչից և այն պոկում:

Ինչքա՜ն երջանիկ էր մայրը, որ նորից տեսնում էր իր Լեթիկոյին: Նա նապաստակներին բարի գալուստ է մաղթում և մխիթարում երկրորդին:

— Դու լավ, քաջ նապաստակ ես, ես քո պոչիկը արծաթով կպատեմ:

Այդպես էլ լինում է:

Գերմաներենից թարգմ.

ՀՈՎՀԱՆՆԵՍ ՔՅՈՒՓԵԼՅԱՆ







# ԱՐՋՆ ու ՍՈՍԸ

ՍԵՆՈ ԲԱԼԱՅԱՆ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

Նստել էինք իրիկնահացի, երբ Սոսն սկսեց.

— Մի օր ես ու Արտոն որսի էինք եկել, ա՛յ, հենց էս դիմացի սարը: Մի կես ժամ էր անցել, որ սկսել էինք բարձրանալ սարը, երբ Արտոյին կորցրի: Դե, մտածեցի, որսի ենք եկել, հո իրար ման ածելու չե՞նք եկել, կհանդիպենք: Մենակ բարձրացա: Շատ ման եկա, համա իզուր, բախտս չբերեց: Միայն իրիկվա կողմը մի տասներկու նապաստակ շալակս առած, հարյուր-հարյուր քսան կաքավ գոտուցս՝ կախ, մի վիրավոր գել էլ քաշ տալով, սարից ցած էի գալիս, երբ հենց դեմս մի մութ բան դուրս եկավ: Ասի՝ ըհը՛, Արտոն է, հիմա ինձ կօգնի... Ուրախ-ուրախ առաջացա: Մոտեցա ու ինչ տեսնեմ՝ մի աժդահա արջ...

— Բա էդքան ծանրություն ո՞նց էիր տանում, ա՛յ Սոս,— ասաց Գասպարը, ծխախոտը վառելով:

— Վա՛հ, էդ էլ բան է՞, որ ասացիր: Սարից իջնում էի, խոմ չէի բարձրանում:

Մենք փռթկացինք, բայց Սոսը, կարևորություն չտալով, շարունակեց.

— Հա՛, էդ որ տեսա, տեղումս քարացա... Մըտածում եմ՝ թե սրան էլ սպանեմ, վայ թե բեռս մի քիչ ծանրանա ու չկարենամ տանել: Ինքս ինձ ասի. «Սոս, արի սրան բաց թող, գնա իր համար ապրի, մի անգամ էլ կգաս հենց սրա համար, էն ժամանակ դրա հաշիվն էլ կմաքրես... Ու հետո էլ մտածեցի, թե որ որսորդ ընկերներս լսեն, ի՞նչ կասեն: Չե՞ն ասի, թե էդ ինչ որսորդ է, որ արջն իրա ոտովն եկել ու հրացանի դեմը կանգնել է, սա էլ վախիցը բաց է թողել: Ճիշտն ասած, էլ չհամբերեցի, հրացանս ուսիցս վեր առա, նշան բռնեցի ու թրա՛խք... Սար ու ձոր իրար կպան, ծուխը տվեց ու դեմս փակեց, ամպերը գոռգոռալով գլխիս թափվեցին... Հետո էլ էնպիսի մի գոռոց հասավ ականջիս, որ բոլորովին խլացա ու շշմեցի... Էն եմ հիշում, որ երբ աչքս բացի ու նայեցի չորս բոլորս, տեսա՝ դիմացիս սարը իր տեղում է, ձորումն էլ ջուրը պսպղալեն ցած է վազում... Արջն էլ մի ժեռ քարի պես փռվել էր դիմացս: Վրա հասա, որ գոտիս օղ անեմ, սրան





էլ կապեմ՝ գելի հետ ու կամաց-կամաց քաշ տալով հասցնեմ ճամփին, դե, էնտեղ էլ մի սելից բանից կպատահի, կբարձեմ ու քաղաք կտանեմ...

Էս մտքով, էն է, մի քանի ոտ առաջ էի գնացել, մեկ էլ քարացա տեղումս: Արջը տեղիցը վեր ելավ, մի երկու անգամ թավալ եկավ, իրեն թափ տվեց, հետո էնպես մի արջավարի ձեն հանեց, որ սար ու ձոր դմբդմբաց... Կանգնեց հետևի թաթերին ու աչքերն աչքերիս, սկսեց ուղիղ դեպի ինձ գալ: Ուզեցի ետ-ետ փախչեմ, բան չստացվեց. բեռս շատ էր ծանր: Էդ անպիտանը վրա հասավ ու, հրացանս ձեռիցս պոկելով, տուր թե կտաս քարովը... Հենց որ տվեց քարովը, հրացանիս միջում եղած չկրակածս էն մի փամփուշտն էլ տրաքեց, որ տրաքեց, վառոդի ծուխը երեսովս տվեց, ասի՝ վերջ... Համա չէ, տեսա առողջ եմ, մենակ քաշ տվածս գելն էր շունչը փչել... Էհ, լա՛վ, հասկացա, որ հիմի էլ էդ բրդոտը իմ հաշիվն է մաքրելու: Ջվախեցա, ինքս ինձ սիրտ տվի. «Սո՛ս, ճարդ տե՛ս, կարաս՝ փախի, գլուխդ պրծացրու»: Բայց բան դուրս չեկավ, բեռս շատ էր ծանր, ոտքերս կախ ընկան ու բոլորովին թուլացան: Հետո էլ սիրտս շատ վատացավ, իսկ ստամոքսս, օ՛յ, օ՛յ, օ՛յ, լա՜վ է անունը չտամ... Հենց էստեղ էլ աչքերս մթնեցին, ուշաթափվեցի: Երբ ուշքի եկա, էնպիսի մի ուժ առա, որ էլ ասելու չի: Ուզեցի փախչեմ, համա ուշ էր: Էդ անտեր արջը կանգնեց դիմացս, երկու թաթերը դեմ արավ ու ռեխը բացած՝ ատամներն էր ցույց տալիս: Մտքովս անցավ, թե երևի ուզում է հաշտվի: «Ախպեր, արի որսս քեզ տամ ու դրանով հաշտվենք, ամեն բան անցնի գնա»:

Նապաստակները շալակիցս դրեցի ցած, հետո էլ նամարդություն չարի, գոտիս բաց արի ու կախանով կաքավները իրեն տվի, որ անուշ անի և ինձ էլ բաց թողնի: Համա ի՛նչ, անպիտանի դեմքին բարության ոչ մի նշան չերևաց, էլի աչքերը չռեց, բերանը ավելի բացեց ու վրաս գոռաց, հետն էլ թքեց երեսիս: Թևով երեսս սրբեցի, ետ դառա, որ փախչեմ, մեկ էլ էդ անպետքը հասավ ու թաթով էնպես դնքսեց, որ քոթուկի նման փռվեցի գետնին:

Շատ էր անցել, թե քիչ՝ միտս չի, աչքս բաց արի՝ տեսնեմ մի մազ է մնում, որ գլորվեմ անդունդը: Շուռ եկա էս մի կողիս ու ի՛նչ տեսնեմ. արջը հենց կշտիս նստած՝ վերջին կաքավն էր անուշ անում: Կաքավների փետուրներից էլ ասես յափնջի էր հագել: Էդ, որ տեսա, աչքերս նորից սևացան, ու ուշքս գնաց...

Կարճ կապեմ, մեկ էլ աչքերս բաց արի, տեսա, որ արջն ինձանից հեռու պպզել է ու իր գործն է տեսնում... Տեսա, որ ծանր գործով է զբաղված, սկսեցի փորսող տալով հեռանալ: Հետո վեր կացա ու, թե երկու ոտ ունեի, տասն էլ ճարեցի, ու ո՜նց փախա: Երբ իջա ձորը ու ետ նայեցի, տեսնեմ արջը վերի ծերպից մի ահագին քար ցած գլորեց, որ ինձ սպանի: Ես մի կողմ փախա ու անցա ջուրը: Արջը, որ էդ տեսավ, երկու թաթը բարձրացրեց վերև ու ինձ մի լավ ահ տվեց...

— Էժան ես պրծել, ա՛յ մարդ,— ասաց Վախթանգը: Ինձ հետ էլ շատ բան է պատահել, համա ուշ է, եկեք քնենք...




ՖԵԼԻՔՍ ՇԱՔԱՐՅԱՆ

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Հիմա էլ կաղնու անտառ կա Արդվու ճամփին՝ ժամանակին կաղնուտի փեշերը կախված են եղել Դեբեդի ձորաբերաններից, արջերը գլուխկոնծի են տվել խաշամով լցված սորաններում: Պախրաներ շատ են եղել, թեև վտանգ էլ է եղել, թե ուր որ է ծառի ճյուղին կուչ եկած լուսանը կցատկի անմեղ կենդանու մեջքին:

Հիմա անտառն ինչքան էլ չափչփես՝ մի սրիկա աղվես ես տեսնելու, մեկ էլ մի քանի շլդիկ։

Անտառից դուրս գալու համար պիտի ելնես մի բարձունք, որին դաշտի մարդը սար կասի: Եթե մի ձոր էլ անցնես, ձախ կողմում կարմիր տանիքներ ես տեսնելու: Արդվու տներն են:

Մի ժամանակ, ինչ-որ ուժերից սարերն այստեղ տեղ-տեղ են գնացել, երբ թուլացել են այդ ուժերը, քարացել են՝ ուս-ուսի տված, ասես բոչարի լինեն պարելիս:

Մեր նախնիներից մեկը, որ ունեցել է վառ երևակայություն ու պատմելու շնորհք, հնարել է այս առասպելը:

Օձունի վանքում Օհան անունով մի վարդապետ է լինում։ Ինչ-ինչ պատճառներով գյուղացիներից վիրավորված, սա որոշում է այնքան հեռու գնալ Օձունից, որ էլ գյուղը չերևա... Գալիս, Արդվու գլխին վանք է հիմնում... Երկար է այս առասպելը, հեքիաթասաց պապը երկու գիշեր կպատմի թոռներին։

Մի քիչ առաջ գնաս, մի ձոր էլ կա։ Ամառ, թե ձմեռ գյուղի մեղվանոցն այդտեղ է։

Հին մարդ է Արդվու մեղվապահը։ Գլխի մազերի համրանքով դժվար օրեր է տեսել։

Պիտի կանգնես սարերի գլխին, որ հեռվից տեսնես Արդվու տները... Տները ձորակներում են, դաշտի կողմից գյուղը չի երևում։

Արդվին քառասուն ծուխ է ունեցել, երբեք թագավորին է եղել... Զորաբերաններին դեռ մնացել են «Կրամտի զավողների» կիսախարխուլ պատերը, օճորքները՝ ծխից սևացած։

Գեղամ պապի այտին մի լայն սպի կա։ Տեղը մազ չի բուսնում։ Դու չես հարցնում նրա մասին, բայց աչքդ այնտեղ է։ Պապը դեմքի վրա զգում է հայացքդ...

— Մի գիշեր, միամիտ տեղս, Աղալոյի Արտաշը խփեց,— ասում է ճնշված, կարծես նորից են խփում,— էդ բոլոր զավողները նրանն էր...

Արդվում միայն ջուր չկա։ Երբեք ծլծլան աղբյուրը հերիք չի անում։ Շրջանի թերթում, ջրի մասին գյուղի սկսնակ բանաստեղծը երգիծական ոտանավոր է տպել...



* * *

Ասացի, որ գյուղ մտնող ճամփի վրա է Գեղամ պապի մեղվանոցը։ Անցորդը նրա տան կողքով պիտի անցնի, բայց դարպասի մոտ կապած գամփռի ահից ճամփից դուրս է գալիս։

Շունը հաչում է. Գեղամ պապը գլխի է ընկնում, որ տան կողքով անցնող կա։

Եթե գյուղ մտնողը անծանոթ լինի, այդ գիշեր մեղվապահի հյուրն է, նրա աչքի վրա տեղ ունի։ Գեղամ պապը հյուրի համար բերելու է ամենաթանկ բանը՝ «ռամկով» մեղրը ու երկար զրուցելու են։ Հյուրը տան պատերին պտղի ու մեղվի հիվանդությունների մասին նկարներ է տեսնելու։

Գեղամ պապը մի աստվածավախ կին ունի։ Նրանց ամուսնության պատմությունը երկար է, իրենց իմացած առասպելների չափ։ Երբ ամուսինը հյուրին գյուղում պտտվող առասպելներ է պատմում, կինը ձեռքն է առնում կիսատ գուլպան, նստում թախտին։ Պապն առաջ Սրբհանի պատմությունն է անում։ Սրբհանը գյուղի գլխի վանքն է, որի պատերին գրած խոսքերը, նրա ասելով, «հերու աշունք մի շեկ մարդ արտագրեց ու տարավ»։

—...Որ գալիս ա Արդվի, հա՛, հավանում ա։ Քարի տակի վանքը շինել ա տալիս, տասներկու մոնթ պահում։ Մոնթը հիմիկվա աշակերտն ա էլի, հասկանո՞ւմ ես...

Եթե մի տեղ Գեղամ պապը բաց է թողնում կամ ուրիշ ձևով է պատմում, կինը նեղացած ընդհատում է.

— Բա էդ եղա՞վ, Գեղա՛մ, ստանեն թենց բա՞ն ա ասում։ Ա՛յ մարդ, էդ ինչի՞ց ա, միտքդ շաղ ես տվել...

Ո՛չ Գեղամ պապը, ո՛չ էլ նրա աստվածավախ կինը չգիտեն, որ վանքի հիմնադիրը կաթողիկոս Հովհան Օձնեցին է եղել։

Բայց առասպելը այստեղ չի վերջանում։

Մի օր սուրբը մոնթերից մեկին ուղարկում է ջրի։ Սա գնում, ետ չի գալիս։ Տասներկուսն էլ արժանանում են առաջինի բախտին։ Այդ միջոցին սուրբը դուրս է գալիս, ահից ու զարմանքից գույն տալիս, գույն առնում։ Մի վիշապ օձ, որ կուլ էր տվել տասներկու մոնթերին, ջուր է խմում։ Դիմացի լանջին մի կին հաց է տանում հնձվոր մարդի համար։

Սուրբը անիծում է. հնձվորն ու իր կինը քա-

բանում են սրբին իմաց չտալու համար։ Հետո սուրբը գավազանով խփում է օձի պորտին, թե՝

— Աստծու կամքով թող ջուր բխի, բժշկի մարդկանց։

Եթե ձորով բարձրանաք վերև, սարի լանջին կնոջ ու տղամարդի հիշեցնող երկու քար կտեսնեք, արևից ու անձրևից փշրված։ Իսկ ձորում օձի պես երկար մի քար կա, պորտից ջուր է դուրս գալիս... Արդվու խաչի օրը այդտեղ հավաքվում են բոռ ու բաչալ, հիվանդոտ մարդիկ, որ խաչն իրենց մուրազը տա... Այդ օրը իրար գտնում են յոթ պորտ բարեկամները...

* * *

Գեղամ պապի թոռը՝ Գևոն արձակուրդ էր եկել։ Բայց գյուղում Գևոն հանգիստ չմնաց։ Գյուղսովետի նախագահի հետ սկսեց հանդերում ման գալ։ Տատը չէր ուզում, որ թոռը հնացած, ծաղկած հաց ուտի, շուտ-շուտ վառում էր թոնիրը։ Երեկոյան Գեղամ պապը գնացել էր ծմակ, թոնրի համար փայտ էր բերել։ Հիմա էլ թախտին նստած սպասում էր թոռանը։ Կինը բացեց դուռը, որ դուրս գա, ճչալով ընկավ գետնին։ Գեղամ պապը վեր թռավ։

— Սատանեն դուռնը կանգնած ա, լիս ա տալիս...—շշնջաց կինը։

Գեղամ պապը ուշքը գնացած կնկանը ջուր տվեց, որ վախը կտրի, դուրս եկավ բակ։ Ծմակից բերած կոճղը լույս էր տալիս մարմանդ վառվող կանթեղի պես...

— Ծմակ տա՞ր,—տնից կանչեց կինը։

Գեղամ պապը էշին գոմից դուրս բերեց, փալանեց, լույս տվող փայտը դրեց էշի վրա ու բռնեց անտառի ճամփան...

«Սատանի փետը» Գեղամ պապի տուն մթնով եկավ, մթնով էլ գնաց։ Մարդ ու կնիկ տեսան փայտի լույս տալը, մեկ էլ՝ երևի շունը, որ անհանգիստ կլանչում էր։

* * *

Արդվում այդ օրը պառավները շատ լաց եղան։ Գեղամ պապի կնկա ուշքն էլի գնաց... Երևի գյուղի բժիշկը էլի ծիծաղով հիշեց պառավի խոսքերը. «Տղա ջան, ոնց եկել ես, էնպես էլ գնա... Օձի պորտը մեզ հերիք ա՞»։

Նոր էր ձեգը գցել։ Գյուղի գլխին խուլ դղրդոց լսվեց։ Գեղամ պապը զարթնեց, տրորեց աչքերը։ Ուզեց վեր կենա, հետո միտքը փոխեց, շրջվեց թիկունքի վրա։ Իրար հետևից լսվեցին մի քանի դղրդոց։ Կինը, որ դուրս էր եկել հավերին կուտ տալու, ճչալով ներս ընկավ։

— Ա՛յ մարդ, վե՛ր կաց, աշխարքը քանդվում ա, ժաժք ա... Տեր աստված, էս ի՞նչ ես անում...

Բլուզը վիզը գցած՝ Գեղամ պապը վազում էր ձորն ի վեր։ Օգոստոսին նա ձորում ջուր տեսած չկար։ Եթե բոբիկ ոտքերով կանգնեիր քարերի վրա, կայրեին կեծացած պղնձի պես։ Վերևում ջրի ձայն լսվեց, քիչ հետո թրջեց ոտքերը։ Գեղամ պապը խաչակնքեց, երեսի գույնը թռավ։ Ջրից դուրս եկավ, հևալով հասավ օձի պորտ։ Օձից վարար ջուր էր դուրս գալիս։

— Ջնգիլը կանաչեց,—կանչեց Գեղամ պապը։—Վա՜յ թե երազ լինի, հա՞... Մարդիկ Գևոյին օդ էին թռցնում։



# ՈՎ ԳԻՏԵ, ԳՈՒՑԵ ԱՅԴՊԵՍ ԷՐ ՊԵՏՔ

ՀԵՆՐԻԿ ԲԱԴԱԼՅԱՆ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

Ինձ թվաց, թե ամառը մեր՝ բակը մտավ այն օրը, երբ Աշոտն առաջարկեց բակում ստեղծել պիոներական ճամբար։

— Ախր ոչինչ չկա մեր բակում,— ասաց Կարենը։

— Կստեղծենք,— ասպետական կեցվածք ընդունելով հայտարարեց Գասպարը։

— Իսկ ո՞վ կլինի ճամբարի պետը,— հետաքրքրվեցի ես։

— Ուզում եք՝ ես կլինեմ,— ինքնավստահ ասաց Գասպարը։

Մենք, իհարկե, չգիտեինք համաձայնե՞նք, թե՞



ոչ, բայց նա այնքան համոզված ասաց, որ տարակուսելու կարիք չկար։

Հաջորդ օրը հավաքեցինք բակի բոլոր երեխաներին, և Գասպարը նրանց պատմեց մեր նախաձեռնության մասին։

— Իսկ հիմա լսեք № 1 առաջադրանքը,— վերջում հայտարարեց Գասպարը,— հարկավոր է բակը քարերից մաքրել։

— Մաքրե՛նք։

Եվ անցանք գործի։ Գասպարը մի պահ հրճվանքով նայեց մեզ, ապա դարձավ Աշոտին.

— Ես գնում եմ տուն, որպեսզի պլան կազմեմ և որոշեմ, թե ովքեր պետք է լինեն իմ օգնականները։

Ո՞վ գիտե, գուցե այդպես էր պետք։

Մենք բոլորս մինչև կեսօր քրտնաթոր աշխատեցինք, բակը լրիվ մաքրեցինք քարերից, նույնիսկ տեղ-տեղ հարթեցինք այնպես, որ երբ Գասպարը դուրս եկավ տանից, զարմանք կտրեց։

— Ա՛յ, ինչ եմ ասե՛լ,— և ապա ավելացրեց։— Առաջադրանք № 2, հարկավոր է փայտ գտնել ճամբարի ցանկապատն ու շտաբը պատրաստելու համար։

— Այդ դեպքում եկեք գնանք տնային կառավարչություն կամ մեր շեֆ ֆաբրիկան,— առաջարկեց Սաթիկը։

— Գնացի՛նք,— ոգևորվեցինք ես ու Աշոտը։

— Դուք գնացեք, իսկ ես կմտածեմ, թե ինչպես պետք է կանգնեցնել դրոշի ձողը։

— Ախր երեքով չենք կարողանա այդքան փայտ բերել, դու էլ արի մեզ հետ։

— Չէ՞ որ ես դեռ նոր առաջադրանքներ պետք է մտածեմ։

Մենք, իհարկե, նորից չհակառակվեցինք. գուցե այդպես էր պետք։

— Ֆաբրիկայից բակ վերադարձանք լիքը ձեռքերով։ Գասպարն ընդառաջ եկավ մեզ և բացականչեց.

— Բոլո՛րդ էլ արդարացրիք ձեզ, այսօրվանից իմ առաջին տեղակալները կլինեք դուք։

Մենք, իհարկե, ցույց տվեցինք. որ դժգոհ չենք։ Ո՞վ գիտե, գուցե այդպես էր պետք։

Առավոտյան բակը նորից աննանաչելի դարձավ։ Թե՛ մեծ, թե՛ փոքր գործի էին կպել։ Մի տեղ փոս էին փորում, մի տեղ փայտերն ամրացնում, մի անկյունում հանգստի փոքրիկ տաղավար պատրաստում։ Ամենքից ակտիվ աշխատում էր Աշոտը, իսկ Գասպարը հեռվից ոգևորված կարգադրում էր։

— Մեխը ամո՛ւր խփեք, փոսը խո՛րը փորեք, այստեղ փայտը ծուռ է ամրացված։

Ամեն ինչ լավ էր գնում, իսկ երբ մի գործ ավարտում էինք, Գասպարն իսկույն վրա էր հասնում.

— Լսեցե՛ք հաջորդ առաջադրանքը։

Ու մենք լուռ կատարում էինք նրա նոր առաջադրանքը։

Մյուս օրը մեր բակը տոնական տեսք էր ստացել։ Ճամբարի հանդիսավոր բացման համար ամեն ինչ պատրաստ էր արդեն։ Երկայնաձիգ ձողից ամրացված փոքրիկ դրոշակները ծփում էին մեղմ քամուց։ Բակում հանգիստ մարդ դժվար էր գտնել. անվերջ ներս ու դուրս էին անում, համերգի նախապատրաստական փորձեր կատարում։ Կեսօրին մեր բակը եկավ մի անծանոթ քեռի և ասաց, որ

խմբագրությունից է։ Բոլորս շրջապատեցինք նրան։ Նա մեզ հարցեր տվեց, թե ինչպես ծնվեց ճամբար ստեղծելու միտքը, ով ինչպես օգնեց ճամբարի ստեղծման աշխատանքներին, ինչ ենք արել և ինչեր դեռ պետք է անենք։

Հանկարծ որտեղից որտեղ խմբագրության աշխատակցի առջև հայտնվեց Գասպարը և սկսեց վրա տալ.

— Ես այս ճամբարի պետն եմ,— ապա չսպասելով լրացուցիչ հարցի՝ շարունակեց.— Եթե ես չլինեի, այստեղ ոչ մի ճամբար էլ չէր լինի։

Գասպարը առանց որևէ մեկին հերթ տալու անվերջ խոսում էր՝ շարունակ կրկնելով. «Ե՛ս որոշեցի... ե՛ս հանձնարարեցի... ե՛ս մտածեցի... ե՛ս փորձեցի... ե՛ս...»

Մենք վիրավորված հեռացանք։ Արդյո՞ք Գասպարը չէր զարմանա, երբ շրջվեր ու տեսներ, որ ընկերներից ոչ ոք չի մնացել, միայն իր «ես»-ն է բակում։

Ճամբարի բացման ժամանակը մոտենում էր, իսկ բակում, ոչ մի երեխա չէր երևում։ Գասպարը կանգնել էր ճամբարի կենտրոնում և անվերջ սուլում էր։ Մենք, իհարկե, լսում էինք նրա սուլոցը, բայց տանից դուրս չէինք գալիս։ Քիչ անց, Գասպարը ինքը եկավ մեր տուն։

— Ի՞նչ է, չե՞ք լսում, բացմանը քիչ է մնացել, հարկավոր է պատրաստվել։

Ես անտարբեր ասացի.

— Ով որ ճամբարը ստեղծել է, նա էլ թող կատարի հանդիսավոր բացումը։

Գասպարն առանց պատասխանելու արագ դուրս եկավ։ Հետո ինձ պատմեցին, որ նույնպիսի պատասխան էին տվել Սաթիկը, Աշոտը, Կարենը և մյուսները։

Ճամբարի բացումը հետաձգվեց։

Հաջորդ օրն իմացանք, որ Գասպարը հրաժարվել է ճամբարի աշխատանքներին մասնակցելուց։

— Հիմա կտեսնենք, թե ինչ պիտի անեն առանց ինձ,— ասել էր նա։

Կարծում եք ամեն բան դրանով ավարտվե՞ց, ո՛չ։ Հենց նույն օրն էլ հավաքվեցինք բակի երեխաներով և ճամբարի պետ ընտրեցինք Աշոտին։ Իսկ գիտեք ինչո՞ւ, որովհետև նա ամենաաշխատասերն է մեր բակում և ամենահամեստը։

Երեկոյան մեր ճամբարի բացմանը շատ հյուրեր ունեինք։ Ա՛յ թե ուրախացել էինք։ Հանկարծ ես նկատեցի, որ կողքիս կանգնեց Գասպարը և գլուխը կախ՝ շշնջաց.

— Ուզում եք ամենափոքրերի ջոկատի ջոկատավարն էլ ես լինեմ...

— Տեսնենք, ինչպես կորոշի ճամբարի խորհուրդը,— ասացի ես։

Ավելին ոչինչ չկարողացա ասել։ Ո՞վ գիտե, գուցե այդպես էր պետք։






Անցած տարի օգոստոսի վերջերին, երբ ես աշխատանքից տուն վերադարձա, կրտսեր որդիս՝ Գրիգորը, որը ձեզ պես կարմիր վզկապ է կրում, ուրախ-ուրախ դիմավորելով ինձ, ասաց.

— Հայրի՛կ, դու հրավիրված ես Տիգրան Պետրոսյանի անվան պիոներական ճամբարի փակման հանդեսին, ահա՛, սա էլ հրավիրատոմսը:

— Սիրով կգնամ,— կարդալով հրավիրատոմսը ասացի ես:

— Ինձ էլ կտանես, չէ՞...

—Իհարկե,—ասացի,— կգնանք միասին:

Իրիկնապահին ես և Գրիգորը տրոլեյբուս նստեցինք և հասանք Հրազդանի ձախափնյա այն թաղամասը, ուր գտնվում է Արամ Խաչատրյանի փողոցը: Ըստ նշված հասցեի, այդտեղ պետք լիներ Տիգրան Պետրոսյանի անվան ճամբարը: Հարց ու փորձ անելով մենք քայլում էինք դեպի Հրազդանի ափը, երբ հանկարծ Գրիգորը բացականչեց.

— Ա՛յ ճամբարը, հայրի՛կ, տե՛ս, ինչ սիրուն, ինչ մեծ ճամբար է...

Մոտեցանք: Կամարակապ շքամուտքի ճակատից մեզ էր ժպտում աշխարհի չեմպիոնի լուսանկարը: Հսկայական տարածություն էր բռնում ճամբարը: Ցանկապատի վրա շարված էին ցերեկային տասնյակ կլոր լուսամփոփներ, որոնք, ասես, միմի լուսին լինեին: Բարձր դրոշաձողի ծայրին շողշողում էր կարմիր աստղը: Աստղից ճառագայթաձև իջնող լարերի վրա մայիսյան թիթեռների նման թրթռում էին հարյուրավոր գույնզգույն դրոշակիկներ:

ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆ.

Այնքան ժողովուրդ էր հավաքվել, որ նստարանները տեղ չէին անում, և ցանկապատից դուրս ոտքի վրա կանգնած մարդկանցից գոյացել էր մի նոր ցանկապատ:

Այդ օրը արևն ուշ էր մայր մտնում: Արդյոք նա՞ էլ էր ուզում սպասել, մասնակցել ճամբարի փակման հանդեսին, թե՞ պարզապես երեխաներին էր այդպես թվում: Արևը շատ սպասեց, բայց հանդեսը դեռ չէր սկսվում... Եվ նա ստիպված հավաքեց իր ոսկե շողերն ու հեռացավ:

Իսկ երեխաներն անհամբեր սպասում էին...

Դուք, անշուշտ, նույնպես անհամբեր սպասում եք, որ ես պատմեմ նրանց հանդեսի մասին: Բայց չէ՞ որ մինչ այդ, ճամբարականները հետաքրքիր նախաձեռնությունների, տքնաջան աշխատանքի մի ամբողջ պատմություն են գրանցել իրենց ճամբարային հուշատետրում: Եկեք նախ ծանոթանանք գեղեցիկ հուշ դարձած այդ անցած օրերին:

* * *

Երկու տարի առաջ նրանք կազմակերպեցին բակային ճամբար, որը տեղավորված էր ավտովարորդ Վաղարշակի բակում: Լավ մարդ է քեռի Վաղարշակը. նա սիրում է երեխաներին և շատ հարցերում օգնում, ընդառաջում:

Բայց շուտով կառուցվեցին նորանոր վիթխարի շենքեր, եկան նոր բնակիչներ, և երեխաներն այնքան շատացան, որ քեռի Վաղարշակի բակում ոչ մի կերպ տեղավորվել չէին կարող:

Այն ժամանակ (դա արդեն անցյալ տարի գարնանն էր) պիոներները որոշեցին ճամբար կառուցել մի ազատ, ընդարձակ վայրում, որ ոչ ոքի չխանգարեն և իրենք էլ կարողանան ազատ շնչել ու գործել:

Եվ ահա նրանք ընտրեցին մի քարքարոտ, խորդուբորդ տարածություն, որի հարթեցումը մեծ ջանք ու աշխատանք էր պահանջում: Բայց պատանի լենինյանները չվախեցան դժվարություններից և մեծ եռանդով գործի անցան: Նրանց օգնության հասան նաև մեծերը՝ կոմերիտականները: Գրիգորյան Մարատը, Ղևոնդյան Ալբերտը, Գրիգորյան Նատալյան, Ղևոնդյան Համլիկը, Թարիքարյան Հակոբը, Անտոնյան Գևորգին, Ավետիսյան Անահիտը այնպես տարվեցին ճամբարով, որ մեկը դարձավ ճամբարի պետ, մյուսը՝ շտաբի, մեկը ավագ ջոկատավար, մյուսները՝ ջոկատավարներ:

Սակայն պատանիների խիզախ նախաձեռնությունը դարձյալ գլուխ չէր գա, եթե նրանց չօժանդակեին մի շարք հիմնարկների ու կազմակերպությունների ղեկավարներ: Այդ օրերին քուն ու դադար չուներ № 14 թաղային կոմիտեի նախագահ Տիգրան Քեհյանը: Նա ձեռք բերեց բավականաչափ շինանյութ և թաղի հյուսն վարպետների միջոցով պատրաստեց մի ընդարձակ սենյակ, որտեղ տեղավորվեց ճամբարի շտաբը: Իրենց բուլդոզերներով օգնության եկան № 1 և № 2 տրեստները, 26 կոմիսարների շրջանի շին-վերանորոգման գրասենյակը մատակարարեց տախտակ ու փայտ՝ բեմի համար, դրոշի ձողը տվեց քաղսովետին կից հատուկ մասնագիտացված գրասենյակը:

Մեկ ամիս հետո ճամբարն արդեն պատրաստ էր, և հուլիսի 24-ին տեղի ունեցավ հանդիսավոր բացումը:

Անցել էր ամառային արձակուրդի մեծ մասը, մնում էր ընդամենը մեկ ամիս ու մի քանի օր: Բայց այդ կարճ ժամանակամիջոցում խելացի ու աշխատասեր ճամբարականները որքա՜ն հետաքրքիր գործեր կատարեցին: Նրանք կազմեցին և շտաբի պատին փակցրին իրենց աշխատանքային պլանն ու ռեժիմը: Գործի անցան թատերական, ասմունքի, երգի-պարի, շախմատի, թենիսի, ֆուտբոլի և մյուս ինքնագործ խմբերը: Շուտով պիոներները ճաշակեցին իրենց թափած քրտինքի ու աշխատանքի պտուղները: Թենիսի գծով նրանք շահեցին համաքաղաքային մրցության առաջին տեղը, երգի-պարի խումբը քաղաքային օլիմպիադայում ուշադրության արժանացավ: Նրանց ուրախությանը չափ չկար:

Նրանք կազմակերպեցին էքսկուրսիաներ դեպի Սևան, Հանքավան, որտեղ հանդիպում ունեցան Կանազի ճամբարի հետ և մինչև երեկո հյուր մնացին նրանց: Օգոստոսի 20-ին կազմակերպվեց տուրիստական արշավ դեպի Արագածի գագաթը,



որին մասնակցում էին 14 պատանիներ: Նրանք տեսան Բյուրականի աստղադիտարանը, բարձրացան Արագածի կատարը, հանդիպում ունեցան ակադեմի-



կոս Ալիխանյանի գիտական հիմնարկի աշխատողների հետ, որոնք իրենց աշխատանքին զուգընթաց աճեցնում էին այնտեղ ցրտակայուն բույսեր: Պատանիները եղան նաև կենդանաբանական այգում, մանկական երկաթգծում, Հ. Թումանյանի տուն-թանգարանում, ճամբարում հանդիպումներ ունեցան տիկնիկային թատրոնի աշխատողների, բանաստեղծ Հ. Շիրազի հետ: Փոխադարձ հանդիպումներ ունեցան նաև Գագարինի, Տերեշկովայի և Կոմիտասի անվան ճամբարների հետ: Մի ամբողջ օր նրանք անցկացրին Գագարինի անվան ճամբարի պիոներների հետ, ճամբարամերձ զով անտառում: Ուշ երեկո էր արդեն, բայց երեխաները չէին կարողանում բաժանվել իրարից և տուն վերադարձան անմոռանալի տպավորություններով:

* * *

Երբ իջավ իրիկնային մթընշաղը, և հեռվում, վերջալույսի դեղնակարմիր ֆոնի վրա նկարվեց Արագած լեռն իր չորս ձյունափայլ գագաթներով, ճամբարում տիրեց մի խորհրդավոր լռություն:

— Արդեն սկսո՞ւմ են,— ականջիս շշնջաց Գրիգորը:

— Այո, սկսում են...սը՛ս...

Հանդիսավոր բացումից հետո ճամբարի պետը գովասանագրեր տվեց այն պիոներներին, որոնք չեն խնայել իրենց ուժերը և պատվով են կատարել ամեն մի հանձնարարություն: Եվ գալիս էին նրանք մեկ-մեկ, ցնծուն դեմքերով, ստանում իրենց փայլուն գործերի վկայագրերն ու հեռանում: Նրանք շատ էին, ես հիշում եմ միայն Գրիգորյան Օնիկին, Վարդանյան Տիգրանուհուն և Ղևոնդյան Մարիամին, որոնց անունները լսում էի տարբեր առիթներով: Իսկ Նատալյա Գրիգորյանը, Ազնիվ Ադամյանը, Համիկ Ղևոնդյանը, Հակոբ Հաջյանը և ուրիշներ ծափերի տարափի տակ պարգևատրվեցին ԼԿԵՄ շրջկոմի գովասանագրերով:

Եվ բարձր, շատ բարձր տրամադրությամբ սկսեցին հանդես գալ պատանի արտիստներն ու մարմնամարզիկները, որոնք հիացնում էին իրենց ելույթներով: Իզուր չէ, որ Հակոբ Հաջյանը, Հակոբ Խաչատրյանը, Սառա Մարգարյանը քաղաքային ճամբարների ստուգատեսի ժամանակ առաջնություն էին շահել: Իսկ 13-ամյա Մաջարյան Միհրանը ուղղակի զարմանք էր պատճառում մարմնամարզական վարժություններով: Ասում էին, որ նրան նույնիսկ այժմվանից հրավիրում են Երևանի կրկեսում աշխատելու:

Շնորհալի երեխաներ շատ կային, հնարավոր չէ նշել բոլորի անունները:

Երբ մեծ գոհունակությամբ մենք հեռացանք ճամբարից, տղաս, որ համակվել էր բարի նախանձի զգացումով, ասաց.

— Հայրի՛կ, ինչպե՞ս կուզեի, որ մեր թաղում էլ կառուցեինք այդպիսի ճամբար:

— Բավական չէ միայն ցանկանալ, Գրիգո՛ր,— ասացի,— պետք է բարի երազանքները գործի վերածել: Ա՛յ, նրանք միայն երազողներ չեն:

*ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ*



*Ամեն տարի, երբ վերջանում էր մայիսը, և երևանյան շոգը սկսում էր նեղել բոլորին, շատերի հետ նա էլ էր մեկնում պիոներական ճամբար: Բարձրանում էր Ծաղկաձորի կանաչազարդ սարերը, այծյամի պես մագլցում Թեղենիսի դժվարանց քարափներն ու կածանները, կամ ջոկատի ընկերների հետ լողանում էր գետում: Իսկ երբ իջնում էր երեկոն, գետափին հավաքվում էին երեխաները՝ երգում, պարում: Տղաներից շատերը կռիվ էին բռնում, հաղթում, պարտվում: Նա էլ էր գալիս: Բոլորից փոքրն էր, բայց չափվում էր մեծերի հետ:*

*Այսպես անցնում էին օրերը և օրերի հետ մեծանում էին նրանք: Այդ ժամանակ նա նույնիսկ չէր էլ մտածում այն մասին, որ մանկական խաղերը, գե-*



տափում լողալն ու կանաչների վրայի ամենօրյա «կոխը» կոփում են իրեն:

Մի օր էլ գզգզված մազերով, կարճահասակ այդ տղան ոտք դրեց լողավազան:

— Ես էլ եմ ուզում աշտարակից ցատկել,—ասաց նա մարզիչին և ամաչկոտ կախեց գլուխը:

— Իսկ դու լողալ գիտե՞ս,—հարցրեց Գևորգ Հովհաննիսյանը՝ ոտքից գլուխ չափելով նրան:

— Իհարկե, ճամբարում բոլորից շատ ես էի սուզվում,—Նրա աչքերը ուրախ փայլեցին:

— Դե լավ, որ այդպես է, կփորձե՛նք:

Եվ սկսվեցին մարզումները: Անցան ամիսներ: Մարզիչը կարծես մոռանում էր գզգզված մազերով փոքրիկին: Նրա աչքում այդ մշտաժպիտ տղան դառնում էր ամուր կազմվածքով իսկական լողորդ:

Եկավ առաջին քննության օրը:

Նա կանգնած էր երեք մետր բարձրություն ունեցող ոստնյակի վրա: Ներքևում ջրավազանն էր՝ շրջապատված բազմաթիվ հանդիսատեսներով: Լողավազան էին եկել նաև նրա համադասարանցիները: Նա հուզված էր, աչքերում սարսափ կար, ոտքերը դողում էին: Հանկարծ աչքերը մթնեցին, նա անհաջող մի շրջադարձ կատարեց և սուզվեց ջրում: «Ինձանից ջրացատկորդ դուրս չի գա»,—հուսահատված մտածեց տղան՝ դուրս գալով ջրավազանից:

# ՏՂԱՆ

— Ա՛յ, հիմա արդեն համոզված կարող եմ ասել, որ դու իսկական սպորտսմեն կդառնաս,—գրկելով նրան՝ ոգևորվեց մարզիչը:

Ով գիտե, գուցե այդ պարտությունն ու մարզիչի հոգատար վերաբերմունքը սախպեցին, որ նա ավելի եռանդուն շարունակի մարզումները:

Նորից անցան օրեր: Ջրացատկի ոստնյակի վրա կրկին երևաց նա: Արքան էր փոխվել, աչքերում չկար վախի նախկին զգացումը, իսկ առլետիկ մարմինն ու վստահ քայլերը հաղթանակ էին խոստանում: Ոստնյակը ճկվում էր նրա ոտքերի հարվածից: Նա գեղեցիկ ցատկումով պոկվեց տեղից և, ձեռքերը տարածած, գլխիվայր պտույտներ կատարեց օդում:

Լողավազանի ջուրը կոհակվեց՝ իր մեջ առնելով փոքրիկ ջրացատկորդին:

Լողավազանը թնդաց հանդիսականների ծափերից ու աղմուկից:

Դա 1961 թվականին էր, Բաքվում: Դպրոցականների համամիութենական սպարտակիադային մասնակցեց նաև նա և ստացավ սպորտային առաջին կարգ: Ու այսպես սկսվեց սպորտային շրջագայությունը:

1961, 1962 թվականներ... Մոսկվա... Լենինգրադ... Կիև... Խարկով... Երկրի ուժեղագույն ջրացատկորդները հաշվի էին նստում նրա հետ: Նա շատերին էր զարմացնում իր ճկունությամբ և վարպետությամբ:

1963 թվական: Հերոս Վոլգոգրադը ունական տեսք էր ստացել: Ամենուրեք հնչում էին պատանիների երգն ու ծիծաղը: Այստեղ էին հավաքվել երկրի պատանի լավագույն մարզիկները՝ դպրոցականների համամիութենական 8-րդ սպարտակիադային մասնակցելու համար:

Պայքարը սկսված էր: Մեկը մյուսի հետևից ցատկաշտարակին էին մոտենում տարբեր հանրապետություններից եկած մարզիկները: Սիրելի մարզիչի մոտ նստած՝ նա հանգիստ սպասում էր իր ցատկահերթին: Ահա և բարձրախոսի միջից լսվում է նրա ազգանունը:

— Հերթը քոնն է, մի շտապիր, չհուզվես:

Երբ նա երևաց ցատկաշտարակում, բոլորը զարմանքով նայեցին միմյանց:

— Այդ փոքրիկին ինչո՞ւ եք թույլ ավել...

— Կվախենա երեխան, ցած իջեցրե՛ք,—այս ու այն կողմից բղավում էին ու ծիծաղում:

Բայց նա հանգիստ էր: Ասես ոչինչ չէր լսում: Հանդարտ քայլերով մոտեցավ աշտարակին: Ոստնյակը նորից ճկվեց: Ցատկ... պտույտներ... Մի պահ լռություն տիրեց: Ոչ մեկը չհավատաց իր տեսածին, իսկ նա հանդարտ դուրս եկավ ջրից, թրջված դեմքը սրբելով:

Հանկարծ բոլորն աղմկեցին, ծափահարեցին: Երկրի չեմպիոնի մրցությունում նա նվաճեց բրոնզե մեդալ:

1963 թվականի դեկտեմբեր: Մրցում էին Ուկրաինայի և Հայաստանի ուժեղագույն ջրացատկորդները: Նա դարձյալ մրցեց մեծերի հետ և հաղթեց նույնիսկ անվանի ջրացատկորդ Սերյոժա Քոչարյանին:

Հաղթողի պատվանդանին կանգնած էր նա, պատանի ջրացատկորդը... Այդ նա էր, այն վոխտ, գզգզված մազերով փոքրիկը, Մաքսիմ Գորկու անվան դպրոցի աշակերտ, սպորտի վարպետ Վահան Սարիբեկյանը: Ծափերն ու աղմուկը շարունակվում էին: Նրա հայացքը մեղմ սահելով անցավ մարզկանց վրայով: Վահանը տեսավ ընկերներին, իր սիրելի մարզիչին, որի աչքերը լի էին ուրախության արցունքով:

ՆԱՐԻԿ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ



# Սկսնակ շախմատիստի ԴՊՐՈՑ

## դասավանդում է աշխարհի չեմպիոն ՏԻԳՐԱՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԸ

Այս անգամ մենք կսովորենք, թե ինչպես միայնակ արքային մատ անել երկու փղով, ինչպես նաև՝ փղով ու ձիով: Նշենք, որ թույլ կողմի ճիշտ պաշտպանության դեպքում արքային երկու ձիով հնարավոր չէ մատ անել:

Ունենալով երկու փիղ, մենք պետք է պարտիան հասցնենք հաղթանակի, հետևելով արդեն մեզ ծանոթ սկզբունքին՝ արքայի օգնությամբ պետք է հակառակորդի արքայի շուրջը ցանց ձգել, վերջ ի վերջո քշելով նրան անկյունը:



Այստեղ սև արքայի համար անմատչելի են g1—a7 և f1—a6 անկյունագծերի ձախ կողմում, ինչպես նաև d1—h5 և c1—h4 անկյունագծերի աջ կողմում տեղավորված դաշտերը:

ԱՌԱՋԱԴՐԱՆՔ. մատ արեք սև արքային՝ քշելով նրան a8 դաշտը: Այնուհետև սև արքային քշեք a1, h8, h1 անկյունային դաշտը, ըստ ցանկության: Չմոռանաք ֆիգուրների համաձայնեցված գործողության մասին: Փղերը ավելի լավ են փոխգործում, երբ նրանք գրավում են հարևան անկյունագծերը: Արքան պետք է աջակցի փղերի «աշխատանքին»:

Ավելի բարդ գործ է փղով ու ձիով մատ անելը: Սակայն այդ խնդիրը նույնպես մեր ուժերից վեր չի լինի, եթե հիշենք մի սկզբունք, որի իմաստը հետևյալումն է՝ ետ վանելով հակառակորդի արքային, փիղը և ձին պետք է լրացնեն միմյանց գործողությունները: Պետք չէ, որ միևնույն դաշտը գրավված լինի երկու ֆիգուրով: Ֆիգուրների հարվածային ուժը պետք է խնայողաբար ծախսել:

Եթե թույլ կողմը բոլոր հնարավորությունները օգտագործի հակառակորդի գործը դժվարացնելու համար, ապա մատը կստացվի միայն անկյունային նույն այն գույնի դաշտում, որոնցով քայլում է փիղը: Ուստի միայնակ արքայի պաշտպանության ճիշտ պլանն է՝ փախչել դիմացի դաշտը, որը փղի գրոհների համար անմատչելի է.



Ահա ուժերի նման հարաբերակցության համար սովորական դիրք: Սպիտակները հասնում են իրենց նպատակին հետևյալ եղանակով.

1. Աb6 Աb8 2. Աc6 Աa8 3. Ձd5 Աb8 4. Ձc7 Աc8 5. Փa7: Սև արքան դուրս է մղված սպիտակ անկյունից: 5... Աd8 6. Ձa5 Աe8: Արքան փորձում է դուրս գալ թակարդից: Եթե նա գնար այլ դաշտ՝ 6... Աc8, ապա կհետևեր 7. Ձe7+ Աd8 8. Աd6 Աe8 9. Աe6 Աd8 10. Փb6+ Աe8 11. Ձf5 Աf8 12. Փa5 Աe8 13. Ձg7+ Աf8 14. Աf6 Աg8 15. Աg6 Աf8 16. Փb4+ և արքան ցանկացած անկյունն է քշված:

Իսկ ինչպե՞ս է այնտեղ մատ ստացվում. այժմ մենք կտեսնենք՝ շարունակելով ընդհատված տարբերակը: 7. Աd6 Աf7: Արքան փորձում է դուրս գալ ձգվող ցանցից: Սպիտակները պետք է ճիշտ խաղան: 8. Աe7 Աf6 9. Փe3: Ահա երկու ճշգրիտ քայլ, և սև արքան դուրս չի գալիս վտանգավոր օղակից: 9. ... Աf7 10. Փd4 Աe8 11. Աe6 Աd8 12. Փb6+ Աc8 13. Աf5 Աf8 14. Փa5 Աe8 15. Աg7+ Աf8 16. Աf6 Աg8 17. Աg6 Աf8 18. Փb4+ Աg8 19. Աf5 Աh8 20. Փc5 Աg8 21. Ձh6 Աh8 22. Փd4×:

Այժմ, երբ դուք ծանոթացաք մատ անելու մեթոդին՝ նավակով, երկու փղով և փղով ու ձիով, դժվար չի լինի միայնակ արքային մատ անելու եղանակը գտնել ուժեղագույն ֆիգուրով՝ թագուհով: Չմոռանաք, սակայն,

ֆիգուրների համաձայնեցված գործողության կարևորության և անհրաժեշտության մասին:

## ԱՐՔԱՆ ԵՎ ԶԻՆՎՈՐԸ ԱՐՔԱՅԻ ԴԵՄ

Խաղի ընթացքում միշտ չի հաջողվում հասնել խոշոր նյութական գերակշռության: Հաճախ հակառակորդներից մեկի մոտ մնում է նվազագույն առավելություն՝ մեկ զինվոր, արքան ու զինվորը պայքարում են միայնակ արքայի դեմ: Այդ դեպքում վճռական նշանակություն ունի զինվորի ընդունակությունը՝ այլ ֆիգուրի փոխարկվելը։

Նախ քննարկենք դեպքեր, երբ միայնակ արքան գտնվելով զինվորի առաջ՝ արգելակում է նրա առաջխաղացումը:



Ահա այդ խաղավերջի հիմնական դիրքը: Այստեղ պայքարի ելքը կախված է քայլի հերթից: Եթե քայլը սևերինն է, ապա նրանք ստիպված են խաղալ 1... Աd8 2. d7 Աc7 3. Աe7, քայլերից հետո, հսկողության տակ վերցնելով փոխարկման դաշտը՝ e8, սպիտակ արքան ապահովում է զինվորի փոխարկվելը: Տվյալ դեպքում, իհարկե, ավելի ձեռնտու է զինվորը թագուհի դարձնել: Իսկ եթե քայլի հերթը սպիտակներինն է, ապա ոչ 1. d7+ Աd8 շարունակությունը, որից հետո նրանք պետք է կորցնեն շահելու վերջին հույսը՝ e6 զինվորը կամ պաշտպանելով նրան 2. Աd6 քայլով հակառակորդի արքային զրկել շարժունակությունից՝ պատ անել նրան, ոչ էլ 1. Աd5 կամ Աe5 քայլը հաջողության չեն հասցնում: Վերջին տարբերակում սևերի արքան պետք է մանևրի այն հաշվով, որ երբ սպիտակ արքան հայտնըվի վեցերորդ հորիզոնականի վրա՝ զինվորի կողքին, անհապաղ կանգնի նրա առաջ:

Արքաների նման դասավորությունը մեծ դաշտի հեռավորության վրա անվանվում է հանդիպակացություն (օպոզիցիա): Գոյություն ունի երեք տեսակի հանդիպակացություն, սակայն այժմ մեզ համար կարևոր է ուղիղ հանդիպակացությունը:



Ուղիղ հանդիպակացություն



Կողային հանդիպակացություն



Շեղ կամ անկյունագծային հանդիպակացություն

Քննարկենք դեպքեր, երբ արքան կանգնած է իր զինվորի առաջ:



Այստեղ սպիտակ արքան չափազանց նպաստավոր դիրք է գրավում և 1. Աd5-ից հետո նա հանդիպակացություն է գրավում 1. ... Աc7 2. Աe6 Աd8 3. d5 Աe8 4. d6 Աd8 5. d7 Աc7 6. Աe7, և սպիտակները տանում են: Եթե սկզբնական դիրքում քայլը սևերինն է, ապա 1. ... Աc7 քայլի միջոցով նրանք գրավում են հանդիպակացություն և հասնում ոչ-ոքիի: 2. Աd5 Աd7 3. Աe5 Աe7 և այլն: Զինվորի առաջխաղացումը ևս սպիտակներին հաղթանակ չի բերում: 2. d5 Աd7 3. d6: Այժմ անհրաժեշտ է նահանջել, չմոռանալով հանդիպակացության գրավման կարևորության մասին: Եվ այսպես՝ 3. ... Աd8 4. Աc6 Աc8: Ամեն ինչ կարգին է: Ոչ-ոքի:

ԱՌԱՋԱԴՐԱՆՔ. ընտրեցեք այսպիսի խաղավերջ և աշխատեցեք վարժություններ կատարել: Ասենք՝ քո ընկերը արքա և զինվոր ունի: Աշխատիր պաշտպանվել՝ դժվարացնելով նրա գործը: Այնուհետև փոխեք ֆիգուրները:

Հաճախ արքաները միակ զինվորից հետո են գտնվում: Պետք է որոշել, արդյո՞ք կկարողանա արքան հասնել զինվորին, թե՞ այն կանցնի մինչև ութերորդ հորիզոնականը՝ չօգտվելով իր արքայի օգնությունից: Նման դեպքերում օգնության է հասնում քառակուսու կանոնը:





Ուշադիր նայեցեք այս դիագրամներին: Եթե արքան գծած քառակուսիների մեջ է գտնվում կամ իր քայլի ժամանակ մըտնում է այնտեղ՝ քառակուսու մեջ, ապա զինվորը անվնաս է:

Տ. Պետրոսյան




ՎԼ. ՕՐՋՈՆԻԿԻՁԵ

Մի անգամ ամառը ես տուն էի դառնում։ Տոթ երեկո էր, զգացվում էր, որ շուտով ամպրոպ կլինի, և փողոցի մեջտեղով բարձր շվվոցով սլանում էին ջրածիծառները։ Նրանք, խուսամթռիչքով ճշտությամբ անցնում էին տների արանքով ու սլանալով վեր, նորից իջնում էին ցած սրընթաց անցնում փողոցով, գրեթե կպչելով սալահատակին։

Ես դանդաղ բարձրանում էի աստիճաններով և արդեն մոտեցել էի բնակարանի դռներին, երբ հանկարծ աստիճանների վրա բացվող պատուհանի գոգին մի ինչ-որ սև բան տեսա։ Մոտեցա և տեսա, որ դա ջրածիծառ է։ Նա ընկել էր անօգնական՝ թևերը տարածած, ու գլուխն էր անընդհատ շարժում, չկարողանալով տեղից շարժվել։ Հին, գույնը գցած վերարկուի նման թխագորշ, գզգզված փետուրների միջից երևում էին նրա լայն բացած ու վախվորած աչքերը։

Անհասկանալի էր, թե ինչպես է ջրածիծառն ընկել այստեղ։

— Դե մի՛ վախեցիր, մի՛ վախեցիր։ Հիմա ես քեզ բաց կթողնեմ,— ասելով, ես նրան զգուշորեն ձեռքս առա։

Բայց նա, երևի, իմ ձայնի մեջ քնքշություն չնկատեց, դողալով շուռ ու մուռ եկավ իմ ձեռքի մեջ և իր կատվի ճանկերի նման սուր մագիլներով ջղաձգորեն կպավ մատիցս։

Ես զգուշորեն պատուհանը բաց անելով, ձեռքս երկարացրի դեպի փողոցը։

Նա թռչնային լեզվով ինչ-որ ուրախ բան ճչաց և, սուր ճանկերով ձեռքիս մաշկը քերծելով, նետվեց ցած, դեպի իր սրընթաց ընկերները։

Իսկ ես սկսեցի մտածել այն մասին, թե որքան լավ է, երբ գտնվում է մեկը, որը քեզ վերցնում է իր տաք ձեռքերի մեջ, բաց է անում լուսավոր պատուհանը և քեզ է վերադարձնում առօրյա աղմուկով լի կյանքը։

Լավ է, երբ քեզ բարձրացնում են այն տեղից, ուր դու ընկած ես անօգնական, թևերդ տարածած, այն ժամանակ, երբ քո կողքին ուրախ ու աղմկոտ կյանքն է հոսում։

Եվ ես, իհարկե, ինձ բարձրացնողի ձեռքը չէի ճանկռի։

ԱՐՇԱՎԻՐ ԴԱՐԲՆԻ

## ԳԱՌՆՈՒԿԸ ԵՎ ՔՈԹՈԹԸ

Խեղճ գառնուկը
Շուրջը նայեց,
Վիզը ծռած՝
Տխուր մայեց.
— Մայրի՜կ, մայրի՜կ,
Ո՞ւր գնացիր։ —
Քոթոթն ասաց.
— Զուր մի՛ լացիր։
Եկ քեզ տանեմ
Մայրիկիդ մոտ։
— Ճի՞շտ ես ասում,
Բարի՛ քոթոթ։
—Հա՛մ, հա՛մ, հա՛, հա՛,
Անփորձ գառնիկ։
Քայլի՛ր, քայլի՛ր,
Կանգ մի՛ առնի։
Տես՝ չմայես,
Ետ չնայես։
— Բա որ հանկարծ
Գայլ պատահի՞։
— Առյուծ էլ գա՝
Բան չի շահի։
Հա՛մ-հա՛մ կանեմ,
Կփրփրեմ,
Ժանիքներով կքրքրեմ։
Գնանք, գնանք
Մայրիկիդ մոտ,
Այնտեղ ջուր կա
Ու կանաչ խոտ։
Իմ հետքերով
Վազի՜ր, վազի՜ր։
Հա՛մ, համ, հա՛մ, հա՛մ,
Հասի՜ր, հասի՜ր։

## ԵՐԳ ԿԱՆԱՉ ՇԻՎԻ ՄԱՍԻՆ

Մի անգամ այգում
Ես անփութորեն կոտրեցի մի շիվ։
Տատս մոտեցավ,
Որ ականջներս մի թեթև քաշի։
— Մարդու ձեռքերը նրա համար են,
Որ սերմեր ցանեն, տնկիներ տնկեն,
Ջորացող ծառին, թառամող ծաղկին
Մի կաթիլ ջուր տան՝ կորուստից փրկեն։—
Տարիներ անցան։ Այգում, անտառում
Ծառեր տնկեցին՝ հարյուրից ավել։
Բայց միշտ թվում է՝ թե մեծ պարտք ունեմ,—
Մեղքս չեմ քավել։
Չեմ կարողանում մոռանալ շիվը,
Որ կես դար առաջ այգում կոտրեցի։
Ահա թե ինչու այսօր այդ մասին
Այս փոքրիկ, փոքրիկ երգը գրեցի։



Բաժինը վարում է պրոֆ. Գ·ԻՏՈՒՆՅԱՆԸ

## ԱՐՏԱՍՈՎՈՐ ՏԵՂՈՒՄՆԵՐ

Եթե ձեզ ասեն, որ լինում են կարմիր, դեղին, սև և այլ գույնի անձրևներ, որ անձրևի ժամանակ երկնքից կարող են թափվել ձկներ, գորտեր, խեցգետիններ, արծաթե դրամ, հացահատիկ ու զանազան ուրիշ կենդանիներ ու առարկաներ, հավանաբար դուք չեք հավատա: Բայց լինում են այդպիսի դեպքեր:

1117 թ. Լոմբարդիայում (Իտալիա) թափվեց կարմիր անձրև, առաջացնելով «արյան» առվակներ: Ականատեսները շտապեցին հայտարարել, որ աստված բարկացել է մարդկանց վրա: Կարմիր անձրևներ տեղացել են աշխարհի շատ երկրներում, հատկապես Միջերկրական ծովի շրջակայքում:

Լինում են նաև այլ գույնի անձրևներ: 1847 թ. մարտի 31-ին Ֆրանսիայում և 1956 թ. հունիսին Կիևի շրջակայքում տեղացել է կաթնագույն անձրև. 1954 թ. ամերիկյան Դավենպորտ քաղաքի բնակիչները տեսել են կապույտ գույնի անձրև, իսկ 1953 թ. մարտի 13-ին Թուրքմենստանում նկատվել է դեղին գույնի անձրև: Փոշավոր տեղումներ եղել են նաև Հայաստանում. 1939 թ. տեղացել է դեղին ձյուն, իսկ 1958 թվականին՝ կարմիր: 1959 թ. մարտի 12-ին Երևանում եղել է բաց դեղնավուն անձրև. Նույն օրը Ապարանում՝ կարմրավուն ձյուն:

19-րդ դարի սկզբին Իրանում անձրևի հետ միասին թափվել են մանր կտորներ, իսկ 1940 թ. հունիսի 18-ին Գորկու մարզի Մեշչերա գյուղում՝ արծաթե դրամներ: Հեռավոր Արևելքում, Նոր Զելանդիայում, Դանիայում, Նորվեգիայում, Շոտլանդիայում հաճախ նկատվել են միջատների, ձկների, գորտերի, խեցգետինների և ջրային այլ կենդանիների անձրևներ:

Երկար ժամանակ մարդիկ չըհասկանալով արտասովոր տեղումների առաջացման պատճառները՝ դրանք վերագրում էին աստվածությանը: Այսօր արդեն գիտնականները բացատրում են դրանց առաջացման պատճառները: Պարզվում է, որ պտտահողմերին անցնելով անապատների վրայով՝ մթնոլորտի վերին շերտերն են բարձրացնում հազարավոր տոննաներով կարմիր կամ դեղնավուն ավազափոշի: Այդ փոշին խառնվում է անձրևի կամ ձյան հետ, նրանց տալիս համապատասխան գույն: Հրդեհներից լինում են սև գույնի տեղումներ՝ մրի և մոխրի պատճառով: Օվկիանոսների, ծովերի, ճահիճների վրայով անցնելիս՝ պտտահողմերը ջրի հետ միասին օդ են բարձրացնում բազմաթիվ կենդանիներ:



Բևեռամերձ երկրներում կարմրավուն ձյան պատճառը ոչ թե նրա մեջ ընկնող ավազափոշին է, այլ կարմիր գույնի միաբջիջ ջրիմուռները, որոնք շատ արագ են բազմանում: Բավական է քամին ջրիմուռի մի քանի սերմ բարձրացնի օդ, որպեսզի հսկայական տարածություններ ծածկվեն կարմիր ձյան շերտով:

Այժմ մարդիկ չեն վախենում արտասովոր տեղումներից:

## ԱՆՍՈՎՈՐ ՈՒՏԵԼԻՔՆԵՐ

Լոնդոնում հրատարակվող մի թերթ հրատարակել է անսովոր ուտելիքների ցուցակ, ըստ որի, առյուծի միսը շատ համեղ ուտելիք է, վագրի միսը պինդ է և չոր, բայց Անգլիայում ուտում են, ենթադրելով, որ այդ գիշատիչ կենդանու ուժը սննդի միջոցով անցնում է մարդկանց: Փղի միսը Անգլիայում և Աֆրիկայում համարում են լավ ուտելիքներից մեկը, իսկ խորոված ոտքը՝ ամենապատվավոր և համով ուտելիքը. կապիկի միսը շատ է հիշեցնում նապաստակի միսը. կենգուրուի միսը, մանավանդ նրա պոչը, վաղուց համարվում է շատ ու շատ համեղ ուտելիք. այդ պատճառով Ավստրալիայից ամեն տարի մեծ քանակությամբ կենգուրուների պոչ են արտահանում Լոնդոն: Կենգուրուի մսից պատրաստված սուպն ամենահամեղ ճաշն է:

# ԼԱՈԿՈՈՆ

1506 թվականի հունվարի 14-ին Հռոմից ոչ հեռու, մի փոքր գյուղում, որտեղ մի ժամանակ երկինք էին խոյանում հռոմեական տիրակալների պալատները, գտնվեց նշանավոր խմբաքանդակ Լաոկոոնը: Այդ խմբաքանդակի մասին հիշատակվում էր հին հունական արվեստի մեջ և այն չէր հեռանում հռոմեացիների մտքից:

Այդ նոր հայտնագործության լուրը կայծակի նման տարածվեց Հռոմում: Անվերջանալի հոսանքներով մարդիկ գնում էին տեսնելու աստվերների աշխարհից դուրս եկած հերոսին: Բանաստեղծները նրան էին նվիրում խանդավառ բանաստեղծություններ, քանդակագործները մեծ ուշադրությամբ ուսումնասիրում էին այդ գլուխ-գործոցը, իսկ Միքելանջելոն ակնածանքով կանգնեց արվեստի այդ հրաշալիքի առաջ: Ամբողջ Հռոմը հայտարարեց, որ «Լաոկոոնը» ամենահրաշալին է, որը գտնվել է մինչև հիմա:

Իտալական ոսկե դարի արշալույսին Լաոկոոնը նորից հայտնվեց հռոմեական երկնքի տակ: Բարեբախտաբար երեք ֆիգուրներն էլ համարյա ամբողջովին պահպանվել էին: Պակասում էին՝ հոր աջ ձեռքը, մեծ որդու աջ ձեռքի մի մասը և կրտսեր որդու աջ ձեռքը:

Համարյա ճշտորեն որոշված է, որ այդ արժեքավոր խմբաքանդակը ստեղծվել է առաջին դարի առաջին կեսին, հավանաբար Օգոստոս Ռոդոսցու թագավորության ժամանակ, Աղեսանդր,՝ Պոլիդոր և և Աֆինոդոր վարպետների կողմից:

Լաոկոոնը իրենից ներկայացնում է քանդակագործական արվեստի մեծագույն նմուշներից մեկը: Քանդակը պատկերում է «Էնեականի» երկրորդ մասում նկարագրված բանաստեղծական էպիզոդներից մեկը՝ Լաոկոոնի և նրա որդիների ողբերգական մահը, որի մասին պատմում է Վիրգիլիոսը:

Տասը տարի ձգձգվեց Տրոյայի պաշարումը: Աստվածների կամքով Տրոյան պետք է պարտվեր: Տրոյացի քուրմ Լաոկոոնը քաղաքի բնակիչներին խորհուրդ տվեց փայտե ձին քաղաք չբերել և նույնիսկ նրա վրա նետ արձակեց: Աստվածները պատժեցին անհնազանդ քրմին: Ծովից դուրս սողացին երկու հսկայական օձեր, փաթաթվեցին Լաոկոոնի և նրա որդիների վրա ու խեղդեցին նրանց...

Հուլիոս 2-րդ պապը հրավիրեց ամենանշանավոր քանդակագործներին՝ արձանը վերականգնելու համար: Միքելանջելոն հրաժարվեց հրավերքից: Նա չհամարձակվեց վերականգնել Լաոկոոնի ու նրա որդիների կոտրված ձեռքերը: Դժվար ու պատասխանատու գործն ընկավ քանդակագործներ Մոնտորզոլլիի և Կորնակինի վրա:



Քանդակի վերականգնումից հետո չդադարեց նրա ուսումնասիրությունը և չհանդարտվեցին նրա շուրջը եղած վեճերը: Հազարամյա գլուխգործոցը նորից վերականգնվեց XVII դարում և ավելի ուշ՝ XIX դարում:

Լաոկոոնը հանդիսանում է հունական կլասիկ արվեստի ամենանշանավոր և առանձնահատուկ խմբաքանդակներից մեկը: Ֆիգուրները արված են մեծ կարողությամբ և բացառիկ վարպետությամբ:

Օձերը փաթաթվել ու անխղճորեն խեղդում են հորն ու որդիներին: Մեծ որդին դեռ դիմադրում է: Նա ձգտում է դուրս պրծնել հրեշի օղակներից: Փոքրը մահացու խայթված է, թուլացել է և ուր որ է կընկնի: Նրա հայացքը որոնում է հորը: Մյուս օձը փաթաթվել է անհնազանդ քրմի մարմնին: Անմարդկային ճիգով նա ցանկանում է ազատվել օղակից: Մինչև վերջին մկանը լարված մարմնի վրայից ընկել է հագուստը: Բայց նրա դեմքը այնքան ֆիզիկական տանջանք չի արտահայտում, որքան կարեկցանք դեպի իր կողմը նայող որդիները: Նրա սիրտը պատռվում է ցավից, իսկ հուսահատական վշտով լի աչքերը օգնություն են խնդրում երկնքից:

Այս խմբաքանդակը դիտողի վրա թողնում է շշմեցուցիչ և անմոռանալի տպավորություն: Իսկապես այն կարելի է համարել քանդակագործական արվեստի գլուխգործոց: Ահա արդեն չորս ու կես դար է, ինչ Լաոկոոնը դրված է Վատիկանի թանգարանում:

# «ՇԱՀԻ» ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹՅՈՒՆԸ

Խոսքը ոչ թե Իրանի շահի, այլ ալմաստի մի բյուրեղի ճանապարհորդության մասին է, որը հայտնի է «Շահ» անունով։

«Շահի» պատմությունն սկսվում է հրաշքների երկիր Հնդկաստանից։ Սրանից մոտ 500 տարի առաջ կենտրոնական Հնդկաստանի կիզիչ արևի տակ ալմաստ որոնող հազարավոր նեգրերից մեկը գտնում է դեղնավուն ալմաստի մի բյուրեղ. Այդ թանկագին քարը նախ ընկնում է իշխաններից մեկի արքունիքը, ապա դառնում մոնղոլների սեփականություն։ Երբ գահ է բարձրանում թանկարժեք քարերի մոլի սիրահար Ջեհան, այդ քարի հակառակ երեսին փորագրել է տալիս իր անունը։ Թանկարժեք քարերի պակաս սիրահար չէր նաև Ջեհան շահի որդի Աուրենգ Զեբը։ Նա իր հորը նետում է զնդան և տիրանում նրա թագին ու հարստությանը, այդ թվում նաև «Շահ» ալմաստին։

«Շահը» հետագայում տեղափոխվում է Դելի։ Բայց 1730 թվականին Նադիր Շահը ավերում է Դելին և թանկարժեք քարերի հետ Պարսկաստան տանում «Շահ» ալմաստը։ Մոտ 100 տարի հետո Պարսկաստանում այդ քարի վրա ավելանում է երրորդ մակագրությունը. «Տիրակալ Կաջար Ֆաթհալի-շահ Սուլթան, 1824 թ»։ Հետագայում «Շահը» պարսկական շահի որդի՝ արքայազն Խոսրև Միրզայի միջոցով հանձնվում է Ռուսաստանին։

1914 թվականին, երբ սկսվում է համաշխարհային պատերազմը «Շահը» շտապ կերպով փոխադրվում է Մոսկվա և մինչև հիմա էլ պահվում է այնտեղ, Օրուժեյնի թանգարանի թաքստոցում։



Վերջին անգամ «Շահը» ցուցադրվել է 1925 թվականին արտասահմանյան հյուրերի համար Մոսկվայում կազմակերպված ցուցահանդեսում, «ալմաստի բաժնում»։

Բնության ամենապինդ այդ քարը, որը չի լուծվում ոչ մի հեղուկի մեջ և փայլփլում է ծիածանի բոլոր գույներով, դարեր ի վեր գայթակղել է մարդուն ու դարձել պերճաշուք պալատների զարդ։

Ալմաստը թանկ է գնահատվել բոլոր ժամանակներում։ Անգամ նրա ամենափոքրիկ կտորը 200 անգամ ավելի թանկ արժե, քան իր կշռին համապատասխան պլատինն ու ոսկին։ 1934 թվականին Աֆրիկայում մի նեգր իր տիրոջ բակում գտավ հավի ձվի մեծության մի ալմաստ և տվեց տիրոջը, դրա փոխարեն նա ստացավ 10 ֆունտ ստեռլինգ։ Տերը ալմաստը վաճառեց 63 հազար ֆունտ ստեռլինգով։ Այնուհետև այդ նույն ալմաստը վերավաճառվեց Ամերիկայում 145 հազար ֆունտ ստեռլինգով։

Ալմաստը կապիտալի աշխարհում ծառայում է որպես կռվածաղիկ.

Սովետական երկրում ալմաստը դարձել է մեր տեխնիկայի հիմնաքարերից մեկը։ Ալմաստը օգտագործում են ապակի և կարծր քարեր կտրելու, պողպատի զանազան տեսակներ շաղափելու, հղկելու և տաշելու համար։ Նրանով կտրում են այն, ինչ չի կտրվում ամենակարծր պողպատե կտրիչով. հորատում են այնտեղ, որտեղ երկարատև աշխատանքի համար չեն դիմանում մետաղի ամենակարծր համաձուլվածքները։ «Ալմաստ» բառը հունական ծագում ունի և նշանակում է անհաղթ, անպարտելի։ Բայց ալմաստը աստիճանաբար հե-

## ԿԱՅԾԱԿ

Ի՞նչ եք կարծում, մեր մոլորակի վրա արդյո՞ք հաճախ է որոտ լինում։ Տարեկան հազա՞ր անգամ, երկու հազա՞ր... Ո՛չ, ամեն տարի երկրի վրա կայծակը ճայթում է ավելի քան 3 միլիարդ 100 միլիոն անգամ։ Դա նշանակում է, որ յուրաքանչյուր վայրկյանում աշխարհի տարբեր ծայրերում լսվում է ոչ պակաս, քան 100 որոտ։

Այդ հզոր էլեկտրական լիցքերն իրենց մեջ պարունակում են հսկայական էներգիա. Լարվածությունը երբեմն հասնում է 100 միլիոն վոլտի, այսինքն երկու միլիոն ավտոմեքենայի շարժիչի հզորության։ Կայծակի երկարությունը կարող է հասնել մի քանի կիլոմետրի։ Բնության այդ հզոր երևույթը մարդու կողմից դեռևս չի սանձահարված։ Չնայած շանթարգելների լայն տարածմանը, կայծակը տարեկան խլում է մի քանի հազար մարդկային կյանք։

Բայց կայծակը նաև օգուտ է տալիս։ Իրենց «կայծակնային» թռիչքների ժամանակ նրանք օդից խլում են միլիոնավոր տոննաներով ազոտ և ուղարկում գետնի տակ որպես պարարտանյութ։

Այժմ շատ երկրների գիտնականներ խորհում են այն մասին, թե ինչպես «սանձել» կայծակները և ստիպել, որ նրանք իրենց լրիվ կարողությամբ աշխատեն մարդու համար։




**Ա**շխարհում առաջին ավտոմոբիլային մրցումները տեղի են ունեցել 1894 թվականին Փարիզում: Այն ժամանակ ավտոմեքենաների ամենաբարձր արագությունը կազմում էր ժամում 12 կիլոմետր:

**1901** թվականին ամբողջ աշխարհում հաշվվում էր 7200 ավտոմեքենա: 25 տարի հետո այդ թիվը հասավ 27 միլիոնի:

**Ա**մենատարօրինակ լիճը գտնվում է Տրինիդադ կղզում (Կարիբյան ծով): Ջրի փոխարեն այդ լճում... կա հեղուկ ասֆալտ:

**Մ**աթեմատիկայում առաջին անգամ զրոն սկսել են գործածել արաբները՝ 9-րդ դարում: Նրանք էլ վերցրել են հնդիկներից: 1202 թվականին իտալացի վաճառական Պիզանոն հայտնագործեց «բացասական թիվը»: Դրանով նա նշանակում էր իր պարտքերը: Ավելի ուշ, 14-րդ դարում երևան եկան + և — նշաններ:



**Ե**րկրի արհեստական արբանյակ բաց թողնելու առաջին փորձը տեղի է ունեցել 1740 թ. Ֆրանսիայում և անցել է անհաջող: Այդ նպատակի համար ձուլվել է հատուկ հրանոթ, որը և երկինք է ուղարկել մի հսկայական մարմին: Ժամանակի մի քանի գիտնականներ համոզված էին, որ այդ մարմինը դուրս է եկել ուղեծիր և պտտվում է Երկրի շուրջը: Բայց երկու տարի հետո գերմանացի մաթեմատիկոս Հանս Հարթենշտեյնը ապացուցեց, որ դա միանգամայն անհնարին բան է... Բայց այդ անհաջող փորձը դրական դեր խաղաց. հենց այս դեպքը դրդեց ֆրանսիական գրող Ժյուլ Վեռնին գրելու «Թռիչք դեպի լուսին» վեպը:

*Դանիայում գոյություն ունի փետուրի թանգարան: Տարիներ առաջ ագարակատեր Խանսենը թռչուններ էր բազմացնում: Նրա հետաքրքրասեր որդին հինգ տարեկան հասակից սկսեց թռչունի փետուր հավաքել և դրանք դասավորել ըստ գույնի ու մեծության:*

*Հետագայում նա դարձավ փետուրի արտահանման գծով ամենանշանավոր ֆերմերներից մեկը և միակ մարդը, որն ուներ փետուրի մեծ հավաքածու՝ ավելի քան 10 միլիոն փետուր: 1957 թվականին պաշտոնապես բացվեց փետուրի թանգարանը, որ այժմ սիրով այցելում են տեղացիներն ու Դանիա ժամանող ամեն մի օտարերկրացի:*

*ռանում է տեխնիկայից: Նրան փոխարինելու է եկել կոռունդը՝ ավելի դիմացկուն, հրաշափայլ, բազմերանգ ու գեղեցիկ մի բյուրեղ: Կոռունդը քիմիայի վերջին խոսքերից մեկն է, որը ոչ միայն արդուզարդի առարկա է, այլև արժեքավոր տեխնիկական քար: Այդ քարը հաղթական քայլերով մտնում է արտադրություն, դառնում գերդիմացկուն առանցքակալներ, հատիչներ, ոսպնյակներ ու երկարանվագ ասեղներ: Կոռունդը շունչ է տալիս էլեկտրոնային ավտոմատ սարքերին, ռադիոյին, հեռուստատեսությանը, չափող ու ստուգող ճշգրիտ մեքենաներին:*

*Ահա թե ինչու ալմաստից հետաքրքիր դեռ շատ ճանապարհորդություններ պետք է կատարի կոռունդը, բայց այս անգամ ոչ թե դեպի թագավորական արքունիքներ, այլ դեպի կյանք, դեպի արտադրություն:*

*ԺՈՐԱ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

**Լ**իբանանում ամենահարգված ծառը համարվում է մայրին: Նրա պատկերով է զարդարված Լիբանանի պետական դրոշը: Այն կարելի է տեսնել նաև նամականիշերի վրա, փողի հակառակ կողմում և նույնիսկ ոստիկանների գլխարկներին: Լիբանանի մայրին ունի քարի պես ամուր բնափայտ, բայց դառնության պատճառով ոչ մի վնասատու չի մոտենում նրան: Այդ թանկարժեք ծառը անհիշելի ժամանակներից օգտագործվում է որպես շինանյութ, և այնքան անխնա կերպով են օգտագործել, որ մնացել է միայն 4 խղճուկ անտառակ: Եթե 1550 թվականին հաշվվում էր 28 հազար ծառ, ապա այժմ կա ընդամենը 12 հատ: Դրանք պահպանվում են որպես ազգային պաշտամունքի առարկա:



## ԱՂԻ ԱՄՊԵՐ

Ի՞նչ է տեղի ունենում, երբ մոտ հազար աստիճան ջերմություն ունեցող հրաբխային լավան ընկնում է ծովի մեջ։ Ահա այդ հարցն էր հետաքրքրում ամերիկացի գիտնական Վուդկովին, որը 1960 թվականին ճանապարհորդություն է կատարել Հավայան կղզիներում, որտեղ այդ ժամանակ ժայթքում էր Պունա հրաբուխը։ Օդանավով թռչելիս Վուդկովը տեսավ արտասովոր մի տեսարան՝ երկար տարածության վրա ծովափը ծածկըված էր գոլորշու խիտ ծածկոցով։ Ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ օդի այդ շերտում կա մեծ քանակությամբ աղի մասնիկներ, համարյա հարյուր անգամ ավելի շատ, քան սովորաբար լինում է ծովի ջրում։ Ինչպե՞ս է օդը այդքան աղիացել։ Վուդկովը ենթադրեց, որ լավան, ընկնելով ծովի ջրի մեջ, այնպիսի ուժեղ գոլորշիացում է առաջացնում, որ ջրի հետ բարձրանում է նաև աղը։ Այդ ենթադրությունը ճիշտ էր։

Վուդկովի կարծիքով, տաք լավայի և ծովի փոխազդեցության հետագա ուսումնասիրությունները ցույց կտան հրաբխի դերը օդերևութաբանության մեջ։

## ԶԿՆԵՐԻ ԳԵՐԵԶՄԱՆՈՑ

*Օվկիանոսում կյանքի համար օգտակար քիմիական նյութերից բացի, գոյություն ունեն նաև քիմիական թշնամիներ։ Արաբական ծովում լողացող նավերը մի քանի անգամ ականատես են եղել սարսափելի տեսարանի։ Այսպես, 1957 թվականի հունիսին, սովետական առևտրական նավերից մեկը պետք է ուղևորվեր Կոլոմբո-Ադեն։ Հանկարծ նավի քիթը խրվում է ինչ-որ բավականին ամուր զանգվածի մեջ։ Անցած մի քանի վայրկյան, փոխվում է նաև ծովի գույնը՝ կապտականաչից դառնում է մուգ կարմրագույն։*

*Կամրջակ է վազում կապիտանը։*

*— Ի՞նչումն է բանը։*

*Ողջ ծովը ծածկված էր սատկած ձկներով, որ հասնում էր միլիոնավոր տոննաների։*

*Հետազոտություններից հետո գիտնականները գտան, որ ծովում կան ջրի շերտեր, որոնցում բացակայում է թթվածինը։ Ածխաթթու գազով հարուստ այդ շերտերը երբեմն բարձրանում են վեր։ Դրանից էլ սատկում են ծովի բնակիչները։*

## ԱՐՔԻՄԵԴԻ ՕՐԵՆՔԸ ԵՎ ՓԱՐԱՎՈՆԻ ՏԱՃԱՐԸ



Ասուանի ամբարտակի շինարարության նախագծի հաստատման ժամանակ առաջացավ մի կարևոր հարց. ինչպե՞ս փրկել պատմական հուշարձանները, որպեսզի չմնան ջրի տակ։

Առանձնահատուկ արժեք են ներկայացնում Աբու-Սիմբելի 2 տաճարները, որոնք գտնվում են համարյա թե իրար մոտ՝ անմիջապես Նեղոսի ափին։ Դրանք ոչ այնքան կառուցված, որքան փորված են ուղղահայաց բարձր ժայռի մեջ։ Տաճարներից մեկի մուտքի մոտ դրված են 4 հսկայական արձաններ, դրանցից յուրաքանչյուրի լայնությունը հասնում է 5 մետրի։

Հուշարձանները պահպանելու առաջին նախագիծը պատկանում էր իտալական ճարտարապետ Գրապպոլային՝ Վերոնայի հուշարձանների պահպանողին։ Նա առաջարկեց պարսպապատել Աբու-Սիմբելի տաճարները կիսաշրջանաձև պատով՝ 40 մետր բարձրությամբ և 300 մետր երկարությամբ։ Դրան հաջորդեցին մի քանի այլ նախագծեր։ Ամերիկացիներն առաջարկեցին սղոցել ժայռի այն հատվածը, որտեղ գտնվում են տաճարները և ծանրաքարշերով այն բարձրացնել ու դնել նոր հիմքերի վրա։ Ճապոնացիներն առաջարկեցին բոլոր հուշարձանների համար կաղապարներ սարքել, և տաճարները նույնությամբ վերականգնել Կահիրեում։ Առաջարկվեց նաև հուշարձանները սղոցել և մաս-մաս տեղափոխել ուրիշ վայրեր։

Վերջնականապես ընդունվեց ֆրանսիական ճարտարապետ Ալբերտ Կալոյի նախագիծը. տաճարները շրջապատել բետոնե պատով, իսկ պատի հիմքի տակ պատրաստել պողպատյա հարթակ՝ ամուր կցած պատին։ Տաճարները կարծես թե վերցվում են հսկայական թասի մեջ, իսկ ինքը՝ թասը, ասես դառնում է 250.000 տոննա ջրատարողությամբ մի նավ։ Թասի շուրջը բարձրացվում է նոր բետոնե պատ, ստեղծելով հսկայական ջրարգելակ։ Այն լցվում է ջրով և թասը, ըստ Արքիմեդի օրենքի, տաճարների հետ միասին դանդաղ բարձրանում է վեր։

Այնուհետև տեխնիկայի օգնությամբ տաճարները տեղափոխվում ու դրվում են բարձրադիր ափին և այդպես կանգուն կմնան նոր հազարամյակներ։

## ԵՂԱՆԱԿԸ ԵՎ ՄԿՆԵՐԻ ՊՈՉԸ

Մկների մի խումբ տեղավորել էին այնպիսի մի խցիկում, որտեղ մշտապես պահպանվում էր 10 աստիճան ջերմություն, իսկ մեկ ուրիշ խումբ՝ մի այլ խցիկում, 35 աստիճան ջերմության տակ։ Չորս շաբաթից հետո մկներին կշռեցին և չափեցին նրանց պոչերի երկարությունը։

Պարզվեց, որ ցուրտ խցիկում գտնվող մկները աճել են նորմալ, և նրանց պոչերի երկարությունը կազմում է մոտ 7 սմ։ Իսկ տաք խցիկի մկները 1,5 անգամ ավելի թեթև էին կշռում, և նրանց պոչի երկարությունը հասնում էր 8 սմ։ Այս փորձերը կատարվել են Եգիպտոսում։



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. ԷԴՎԱՐԴ ԶԱՔԱՐՅԱՆԻ

# ԲԱՌԱՇՂԹԱ «ԱՎԻԱՑԻԱ ԵՎ ՏԻԵԶԵՐԱԳՆԱՑՈՒԹՅՈՒՆ»



*1. Սովետական տիեզերագնաց: 2. Սովետական մարզատար ինքնաթիռ: 3. Սովետական հայտնի ավիակոնստրուկտոր, «ԼԱ—5», «ԼԱ—7» ինքնաթիռների հեղինակը: 4. Գետ, որի վրա անսպասելի, ստիպված վայրէջք կատարեց սովետական անձնազոհ ու հնարամիտ օդաչու Վ. Մոլոկովը, փրկելով քառասուն ուղևորների կյանքը: 5. Մթնոլորտային երևույթ, որը վտանգավոր է ավիացիայի համար: 6. Սովետական «տիեզերական մանևրող ապարատի» անվանում: 7. Սովետական տիեզերանավ: 8. Տիեզերական տարածությունում թռիչք*



*գործող ապարատ: 9. Քաղաք, որտեղ ապրել ու ստեղծագործել է Կոնստանտին Էդուարդովիչ Ցիոլկովսկին: 10. Սովետական ականավոր ավիակոնստրուկտոր, «Ուկրաինա» («ԱՆ—10») ինքնաթիռի հեղինակը: 11. Քաղաք՝ Սիբիրում, որտեղ 1938 թ. (Մոսկվայից թռչելով) վայրէջք կատարեցին սովետական հերոս օդաչուներ Գրիզոդուբովան, Ռասկովան, և Օսիպենկոն՝ սահմանելով անվայրէջք թռիչքի համաշխարհային ռեկորդ: 12. Սովետական Միության եռակի հերոս-օդաչու: 13. Փառաբանված հայ հերոս-օդաչու, որը խաղաղ պայմաններում կատարել է լեգենդար սխրագործություն: 14. Ֆրանսիական ավիաէսկադրիլիա, որը Հայրենական պատերազմում մարտնչում էր սովետական «Նեման» ավիաէսկադրիլիայի հետ միասին: 15. Ավիացիոն սպորտի ձևերից մեկի սպորտսմեն: 16. Սովետական մարզատար ռեակտիվ ինքնաթիռ, որն իր գերարագության շնորհիվ կոչվում է «Օդային լայներ»: 17. Ավիացիայի տեսակ: 18. Ռազմական ինքնաթիռի տեսակ: 19. Վալենտինա Տերեշկովայի «տիեզերական» անվանումը:*

*Կազմեց՝*

*ՆԱՌԼԵՆ ԲԱԼԱԳՅՈԶՅԱՆ*

## ԽԱՉԲԱՌ

ՈՒՂՂԱՀԱՅԱՑ.—1. Հերոս պիոներ, որն սպանվեց կուլակների ձեռքով: 3. Մարտիկ պիոներ, պարգևատրված «Կարմիր Դրոշի» շքանշանով: 4. Պիոներ պարտիզան, որը զոհվեց հետախուզության ժամանակ, տասներեք տարեկան հասակում: 6. Հերոս պիոներ, որն սպանեց գերմանական գեներալին և ձեռք բերեց կարևոր փաստաթղթեր: 8. Պիոներական զույք:

ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ.—2. Պիոներ պարտիզան, Սովետական Միության հերոս: 5. Հայ հերոս պիոներ: 7. «Երիտասարդ Գվարդիայի» հերոսներից: 9. Պիոներական խորհրդանիշ: 10. Կաբարդինյան պիոներ, որը մեր բանակի համար աճեցրել է հիանալի ձիեր և պարգևատրվել «Պատվո Նշան» շքանշանով:


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06:

ՎՖ 07769: Պատվեր՝ 1097: Տպաքանակ՝ 14 100: Տպագրական 5 մամուլ: Ստորագրված է տպագրության 3 VI 1964 թ.: ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան փ. № 91:

Գինը 20 կ.





Կազմեց՝ ՇԱՎԱՐՇ ԽԱՉԱՏՐՅԱՆ

## ՎԻԿՏՈՐԻՆԱ

Հայ ականավոր երաժիշտներից կազմված լարային այս կվարտետը կոչվում է անմահ Կոմիտասի անունով: Նա համերգներով հանդես է եկել աշխարհի մեծագույն քաղաքներում: 1963 թ. Ամերիկայի Միացյալ Նահանգներում համերգային շրջա-



գայության ժամանակ նրան ընդունեց պրեզիդենտ Ջոն Կեննեդին:

Դուք էլ, սիրելի երեխաներ, ընդունարաններից և ռադիոյով շատ եք լսել կվարտետի հրաշալի համերգները:

Այսպիսի հռչակ վայելող կվարտետի անդամներին պետք է որ ճանաչեն բոլորը: Կարո՞ղ եք ասել նրանց անուն-ազգանունները և ով ի՞նչ գործիք է նվագում:

ՎԱՐԴԱՆ ՊԵՏՐՈՍՅԱՆ

## ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

ՍՈՒՐԵՆ ԱՌԱՔԵԼՅԱՆ



*Մի տնակ է շարժական,*
*Մաքրեր տնի դանդաղան,*
*Ինչ որ իրեն դու պահ տաս,*
*Նույն ձևով էլ կտանաս:*

*Թարմ ու պայծառ իր տեսքով*
*Հյուր է գալիս տաս օրով,*
*Բայց զուգված ու խաղով,*
*Հեռանում է մի տարով:*

*Պայթում է մեծ թնդանոթը,*
*Սարսափով է լցնում օդը,*
*Փայլատակում է հանկարծ*
*Ու կորչում է նա անդարձ:*

*Լեռներ մեծ ու հզոր,*
*Նույնիսկ դառնում են անզոր,*
*Երբ խորքերից կրակոտ*
*Պայթում է հուրը ցասկոտ:*

## Պատասխանում ենք

«ՊԻՈՆԵՐ» № 5

**«ԽԱՉԲԱՌ—ԴԱՂՏՆԱԳԻՐ»**—Հորիզոնական—1. Զար: 2. Հունիս: 3. Մագաղաթ: 4. Լայպցիգ: 5. Սերվանտես: 6. Բոզալա: 7. Հերխաթ: 8. Աթենք: 9. Թեհրան: 10. Բաոբաբ: 11. Շվեյկ: 12. Ճենովա: 13. Նանսեն: 14. Սարգսյան: 15. Ախուրյան: 16. Յուպիտեր: 17. Չղջիկ: 18. Զուգ: 19. Մեսրոպ 20. Արարատ: 21. Օպերա: 22. Մամոնտ: 23. Հանենո: 24 Տրոյա: 25. Ջայլամ: 26. Բայրոն:

Գաղտնագիրը՝ Բեթհովեն, Պարոնյան

**«ԲԱՌԱՇՂԹԱ «Կ» ՏԱՌՈՎ»** — 1. Կոլչակ: 2. Կապիկ: 3. Կրասնովոդսկ: 4. Կոզակ: 5. Կարմրուկ: 6. Կոմսոմոլսկ: 7. Կրասնոյարսկ: 8. Կարկանդակ: 9. Կայծակ: 10 Կոնյակ: 11 Կռունկ: 12. Կորեկ: 13. Կուկ: 14. Կրակ: 15. Կատակ: 16. Կաչաղակ:

**«ԽԱՉԲԱՌ—Հերոսներ»**—Ուղղահայաց— 1. Զոյա: 2 Մորոզով: 3. Կամո: 4. Ստեփանյան: 6. Զիգանշին: 7. Գաստելլո: 9. Պուգաչով: 10. Ֆոմին: 11. Կոշևոյ: 16. Դարկ:
Հորիզոնական.- 5. Հակոբյան: 8. Ավետիսյան: 11. Կրոչկով: 12. Կուտուզով: 13. Չապաև: 14. Շչորս: 15. Երմակ: 16. Դոնսկոյ: 17. Ռադին: 18. Լազո. 19. Վարդան:

«ԿԱՐՈ՞Ղ ԵՔ»--



**«ԽԱՉԲԱՌ — ԴԱՂՏՆԱԳԻՐ»**—1 Տղմուտ: 2. Արտեկ: 3. Րաֆֆի. 4. Արաքս: 5. Սիփան: 6. Շոպեն: 7. Եփրատ: 8. Վոլգա: 9. Չեխով: 10. Եղիշե: 11. Նամուս: 12. Կոնգո: 13. Րատան:

ՃԻՇՏ ՊԱՏԱՍԽԱՆԵԼ ԵՆ՝

ՄԱՐԳԱՐ ՄԱՐԳԱՐՅԱՆԸ (Երևան), ԳԵՎՈՐԳ ԱՄԱՏՈՒՆԻՆ (Օշական), ՎԱՐԴԳԵՍ ԱՆԴՐԵԱՍՅԱՆԸ (Ալավերդի), ՌՈՒԲԻԿ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆԸ (Սևան), ՍԵՆԻԿ ԼՎԻՆՅԱՆԸ (Կիրովական), ՖԵԼԻՔՍ ԳՅՈՒՎԵԼՅԱՆԸ (Սուխումի), ՎԱՂԱՐՇԱԿ ՊԵՏՐՈՍՅԱՆԸ (Հոկտեմբերյան), ՆՈՐԻԿ ՂԱԶԱՐՅԱՆԸ (Լենինական), ՍԱՄՎԵԼ ՔՈՉԱՐՅԱՆԸ (Ախուրյան), ԹԱՄԱՐԱ ՍՈՂՈՄՈՆՅԱՆԸ (Մեղրի), ՎԻԿՏՈՐ ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆԸ (Ախալքալակ) և ուրիշներ:

